ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ



Ոչ, իմ զրույցը
Դեռ չի ավարտվել, երկի՛ր իմ, քեզ հետ...

Եվ ամեն գիշեր ես խոսք եմ բացում քո անդունդների,
Քո ընդերքներում նիրհող պղնձի զնգոցի հետ խուլ,
Ցոլանքների հետ քո ադամանդյա առասպելների,
Աղբյուրների հետ քո լացակումած,
Իմ իսկ արյան հետ,
Եվ սակայն, ավաղ,
Լավ չեմ հասկանում դեռ նրանց լեզուն:

Եվ այնքան եմ ես հասկանում միայն,
Որ քո բիրտ քարի մթին խորքերում,
Ոսկե ու կապույտ թռչունների պես
Ճանթեր կան պահված...

Եվ այնքան եմ ես հասկանում միայն,
Որ անդունդներդ վերքեր են խորին,
Արշալույսները՝
Վերքերդ լիզող շեկ հարալեզներ...

Եվ այնքան եմ ես հասկանում միայն,
Որ թեև այնտեղ՝
Մութ վիհերիդ մեջ,
Քարե խռովք է
Ու անհաշտություն,
Բայց քարափն ի վեր վանք է սրբատաշ՝
Բյուրեղյա ու նուրբ ներդաշնակություն...

Եվ այնքան եմ ես հասկանում միայն,
Որ գիշերային կայծակների մեջ
Քո անդունդները
Դառնում են հանկարծ առավել խորին
Եվ առավել է անմեկին դառնում գաղտնիքդ, իմ հո՜ղ...



Զմռան գիշեր... Զյան հեկեկանք,
Հողմի սուլոց ու փոթորիկ...
Ու մի ծառ է կոպերիս տակ,
Ու մի ծառ է ոսկեհորիկ:

Աշուն էր ուշ, ժայռի ծերպին
Կանգնած մենակ, կանգնած տրտում,
Նա իր վերջին տերևների
Ալ կրակներն էր թափթփում:

Զմռան գիշեր... Զյան փոթորիկ,
Ու ցուրտը խիստ է սաստկանում,
Նա՝ այդպես մերկ ու բարալիկ,
Տեսնես ի՞նչ է հիմա անում:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ՆԱՐԱՊԵՏՅԱՆԻ

# Բառեր

Երևի բառն առաջին տառապանքից է ծնվել՝
Նախամարդու վայրենի տառապանքից ու ցավից,
Նրա ճաքած շուրթերի արյան շիթով է սնվել
Ու սնվել է զնգոցով այն ծխամած անձավի:

Երկրորդ բառը ձերևի սիրո մրմունջ է եղել,
Տաք արյան մեջ խշշացող անմեկնելի մի շշուկ,
Երանելի մի ծարավ ու թրթիռ մի հրեղեն,
Որ ցոլացել է հոգու խորհրդավոր մշուշում:

Հիացմունքից է ծնվել երևի բառը երրորդ,
Խառն են եղել նրա մեջ երևի ճիչ ու հնչյուն,
Բայց գեղեցիկ է եղել, որպես գարնան առավոտ,
Որպես որոտ ու կայծակ, որպես արծվի կռնչյուն:

Հետո բառեր են ծնվել՝ բարի բառեր օրհնության,
Ահեղ բառեր անեծքի, ընդվզումի, բողոքի,
Բառեր, որ պարզ են եղել, որպես պտուղ ու ցորյան,
Խորհրդավոր ձեն եղել, որպես աստված ու ոգի...

Բառեր՝ ցողի պես ցոլուն, բառեր՝ նման կայծքարի,
Բառեր, որոնց խորքերից դեռ հրաշքն է շողշողում,
Բառեր, որոնց շուրթերին ծաղկում ծաղիկը վայրի
Եվ քնքշության ու լույսի մեղեդիներն են դողում:

Եվ բոլորը երկունքի ահեղ ցավով են ծնվել,
Եվ բոլորը տքնությամբ, ինչպես կրակը՝ քարից,
Եվ բոլորը նախ հողի արարչությանն առնչվել
Ու ջրդեղվել են հետո ցողերի մեջ աստղային:

Եվ հիմա քոնն ձեն նրանք՝ այդպես հողոտ ու ցողոտ,
Եվ հիմա քոնն են նրանք՝ այդպես բարի ու ահեղ...
Ու խաղ չանես նրանց հետ, հեգիր դժվար այն դողով,
Որով ծնվել ու մարդու ճաքած շուրթերն են վառել...

●●●

Լեռների վրա զրնգաց տխուր
Գարնան անձրևը՝
Արծաթե զանգակ:

Եվ ծիածանը հիմա ջինջ օդում
Կախվել է, որպես կապույտ արձագանք...

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

# Իսկական փղամարդու պես...

Ֆանտաստիկ պատմվածք

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ջին փնչացրեց ու դոփեց տեղում: Սանձը ձգեցի և մացառների արանքից շարունակեցի հետևել գետի մյուս ափի անցուղարձին:

Փոքրիկ քարավանը ճամբար էր խփել ու պատրաստվում էր գիշերելու: Ես արդեն վստահ էի, որ դրանք հենց այն փախստականներն են, որոնց հետքերով արշավում էի ամբողջ օրը և միայն հիմա, իրիկնադեմին, վերջապես կարողացա հասնել: Ուրեմն, Վարազվաղան իշխանը իր շքախմբով կամ գուցե՝ պահակախմբով, պատրաստվում է գիշերել գետափին, իսկ վաղը, հավանաբար, կեսօրից քիչ անց կհայտնվի պարսից տերության սահմաններից այն կողմ: Ես նաև համոզված էի, որ Վահագն Հայկակը արդեն հանդիպել է իշխանին, և եթե հիմա աչքիս չի երևում, ուրեմն, վրաններից մեկում է: Վահագն Հայկակը իմ թոռնիկն է: Հազիվ տասներկու տարեկան: Ես միայն փորձում էի կռահել, թե նրան հանդիպելիս ի՞նչ է մտածել իր երկրից վիրավորված ու Պարսկաստանի գիրկը գնացող փախստական իշխանը: Այսինքն՝ կարելի էր հազար ու մի ենթադրություն անել, բայց այդ ենթադրությունները մեկը մյուսից ավելի դաժան էին և հուսահատական: Որովհետև այս հնագույն ժամանակներում ամեն մի անզգույշ քայլ, ամեն մի չմտածված խոսք կարող էր լինել ոչ միայն ճակատագրական, այլև՝ վերջինը:

Փախստականների նժույգներն ու ջորիները, որոնց վրայից վերցրել էին թամբերն ու իջեցրել հակերը, անվրդով արածում էին: Վրաններից ներսուդուրս էին անում զենք ու զրահը հանած մարդիկ: Քիչ այն կողմ, խարույկի վրա դանդաղ պտտվում էր շամփրած ոչխարը: Ավելի հեռու, ճամբարի երկու կողմերում ետուառաջ էին քայլում զինված պահապանները:

... Դեռ երեկ էր, որ դասերը պատրաստելուց հետո Վահագն Հայկակը խոսքի բռնվեց ինձ հետ: Նա հետաքրքրվում էր, թե իրարից վիրավորվելով, մարդիկ ինչո՞ւ են միանում իրենց թշնամուն: «Այդ ո՞ւմ նկատի ունես»,— հարցրեցի ես: «Վարազվաղանին»,— ասաց Վահագն Հայկակը ու այնպես նայեց ինձ, որ մըտքովս անցավ, թե մի նոր փորձանք է գըլխիս բերելու: Հատկապես, որ չէի հասկանում, թե այդ ինչ Վարազվաղանի մասին է խոսքը:

«Ո՞վ է այդ զարմանալի անունով մարդը,— հարցրեցի:— Որտեղի՞ց ես գտել»: «Պատմիչներից,— պատասխանեց նա:— Ինքը սյունեցի էր... Տոհմի հետ գժտվել ու անցել է պարսիկների կողմը: Դարձել է Հազկերտ թագավորի մտերիմն ու խորհրդատուն»: «Հա՛,— ասացի ես:— Այդպիսի դեպքեր շատ են եղել: Գժտվում էին իշխանության համար ու գնում էին

թշնամուն ապավինելու»։ «Եթե Վարազվաղան իշխանը չփախչեր ու չհեռանար Պարսկաստան, ուրեմն պատերազմ չէր սկսվի, պարսիկներն իրենց փղերով չէին հարձակվի, Ավարայրի դաշտում էլ այդքան մարդ չէր կոտորվի, ճի՞շտ է»։ «Գուցե»,— համաձայնեցի ես։ «Ափսո՜ս, որ այդ իշխանին ոչ ոք չի հասկացրել, թե ի՛նչ հետևանք էր ունենալու իր բարեկամությունը պարսից թագավորի հետ»,— հառաչեց թոռնիկս։

Իսկ ես նույնիսկ այդ պահին էլ չկռահեցի, թե նա մտքում դրել է վեր կենալ ու գնալ հինգերորդ դար։ Սովորաբար այդպիսի ուղևորությունները կատարվում են ուսուցիչների հետ, որպեսզի կողքից, առանց խառնվելու անցած-գնացած մարդկանց գործերին՝ ծանոթանան ժողովրդի պատմությանը։

Ուրեմն, այս ամենը երեկ էր։ Իսկ այսօր, երբ աչքովս ընկավ Վահագն Հայկակի երկտողը, որտեղ նա ինձ հայտնում էր, թե որոշել է ուղղել երբեմնի թույլ տրված ճակատագրական սխալը, ես հասկացա, որ հիմա էլ պետք է նրան որոնելու գնամ դեպի դարերի խորքը ճիշտ այնպես, ինչպես երկու ամիս առաջ, դպրոցական արձակուրդի օրերին, Լուսնի քարանձավներում ընկել էի նրա ետևից ու՝ «Վահագն Հայկա՜կ, որտե՞ղ ես» գոչելով, ձայնս խզվեց։

... Գետի մյուս ափին աշխուժություն սկսվեց։ Ձորականները դուրս եկան վրաններից, նստոտեցին խարույկի շուրջ։ Ինչ-որ տեղից էլ մի տիկ հայտնվեց, որը, հավանաբար, գինու տիկ էր։ Կիսաշրջանով նստած այդ մարդկանց մեջ նկատեցի իշխանին։ Ավելի ճիշտ, կռահեցի, որ հենց այդ մարդն է Վարազվաղան իշխանը, որովհետև կողքին տեսա Վահագն Հայկակին։ Հնամաշ քրջեր հագած ու խեղճ տղային։ «Ապրե՜ս,— մըտքումս խրախուսեցի նրան,— լա՜վ ես ծպտվել»։ Եվ եթե չի մոռացել, որ իշխանի հետ խոսելիս բացատրվի դասական կամ, ինչպես ասում են, գրաբար հայերենով, ուրեմն, կարելի է հույս ունենալ, որ առանց դժվարության մեզ կհաջողվի դուրս պրծնել ոչ միայն պարսից թագավորի մոտ փախչող հայ իշխանի ձեռքից, այլև ընդհանրապես հինգերորդ դարից։

Արևը մայր էր մտել, և կիրճում տարածվել էր թանձր աղջամուղջը։ Իմ ձին նորից դոփեց ու անհանգիստ փնչացրեց։ Ես բաց թողեցի սանձը և, մեկ-երկու անգամ գավակին թփթփացնելով, ազատ արձակեցի։ Հազիվ էր մի քանի քայլ հեռացել ինձնից, երբ հայտնվելով հինգերորդ դարի ու մեր ժամանակի սահմանագծին՝ անհետացավ։ Կարգն այդպես է. ժամանակի մեջ ճամփորդները անցյալում կամ ապագայում ոչինչ չպետք է թողնեն այն ամենից, ինչ բերել են իրենց հետ։ Իսկ ես իմ ժամանակից այս հեռավոր դար էի եկել ձիով, որովհետև ուրիշ կերպ անհնար կլիներ հետապնդել ու հասնել Հայաստան աշխարհից փախչող իշխանին։ Սահմանագիծն էլ վաղօրոք ճկել ու դարձրել էի գրեթե մի շրջան, որի մեջ հիմա գտնվում էինք բոլորս. թե՛ ես ու Վահագն Հայկակը և թե՛ փախստական իշխանն ու նրա խումբը։ Իհարկե, հնարավոր էր նաև, որ իշխանը ակամա անցներ այդ սահմանագիծն ու իմ ձիու ետևից ինքն էլ հինգերորդ դարից հայտնըվեր մեր ժամանակի մեջ։ Բայց ես համոզված էի, որ գիշերելու պատրաստվող խումբը հազիվ թե շարժվեր տեղից։

... Առայժմ հարկավոր էր անցնել գետը։ Քիչ դեպի վեր խոշոր գլաքարեր կային։ Զգուշորեն ելա թաքստոցից ու գնացի դեպի գլաքարերը։ Ջուրը վարար էր, իսկ քարերը՝ լպրծուն։ Օրը մթնել էր, և լուսինն էլ դեռ չէր ծագել։ Շատ ավելի հեշտ ու ապահով կլիներ, եթե ձիով անցնեի գետը։ Բայց ինձ նման թշվառ ու անօգնական մարդը հո չէ՞ր կարող ձի ունենալ։ Ցատկելով խոշոր գլաքարերի վրայով, ես անցա գետը, բայց ոտքիս քոշերը թրջվեցին ու ծանրացան։ «Ոչինչ, խարույկի մոտ կչորացնեմ»,— մըտածեցի ու մոտեցա ճամբարին։

Հենց նույն պահին էլ մի ծանր հարված ինձ գետին տապալեց։ Փորձեցի ոտքի ելնել, բայց երկու ամուր ձեռքեր կառչեցին իմ սրունքներից և, մեջքիս վրա քարշ տալով, տարան խարույկի մոտ։ Լավ է, որ գոնե այսպես պրծա, անցավ մտքովս, կարող էին նաև տեղնուտեղը սրախողխող անել կամ նիզակով այնպես շամփրել, որ մնայի գետնին մեխված։ Հետո ոտքերս բաց թողեցին. ես շրջվեցի ու իմ դիմաց տեսա Վարազվաղանին։ Նրա կողքին նստած էր Վահագն Հայկակը։

— Պապի՜կ,— գոչեց նա,— ի՞նչ իմացար, որ այստեղ եմ։

«Հիմա ամեն բան փչացնելու է,— անցավ մտքովս։— Միամտորեն ամեն բան ասելու է, որից հետո մեզ հազիվ թե հա-

ջողվի վերադառնալ մեր ժամանակները:
Եվ շա՜տ մեծ բան կլինի, եթե թույլ տաս,
որ ապրենք թեկուզև այսքան հեռավոր
հինգերորդ դարում»:

— Վերջապես, գտա իմ կորած թոռնիկին,— հուզված ասացի ես իշխանին,
հետո շրջվելով տղայի կողմը, սաստիկ
բարկացա.— Քանի՜ ասացի, որ հեռու
չգնաս ու էս ճամփեքին չկորցնենք իրար:
Կարող էիր նաև ավազակների ձեռքն ընկնել: Ի՞նչ բախտ է եղել, որ հանդիպել ես
պատվավոր մարդու… Տե՛ր իմ… երկար
կյանք ունենաս և թող Աստծո օրհնությունը միշտ վրադ լինի: Թույլ տուր, որ շարունակենք մեր ճամփան:

— Ո՞վ ես,— մսի խոշոր կտորը քթիս
տակ թափահարելով, մռայլադեմ հարցրեց
իշխանը:

— Գրիչ եմ, տե՛ր իմ:

— Ի՞նչ ես անում էս կողմերում:

— Նախճավան եմ գնում… Թոռնիկս
մեծ տղա է արդեն: Եթե զինվոր լինեի՝
կռվել կսովորեցնեի: Բայց մի պարզ գրիչ
եմ, և արդեն ժամանակն է, որ տղան
մագաղաթ քերել իմանա, մելան սարքել
ու եղեգնի ծայրը տաշել իմանա այնպես, որ ներկը չտարածվի, իսկ տառերն
էլ ընթեռնելի լինեն: Մենք ցեղով գրիչներ ենք, տե՛ր իմ… Քանի՜-քանի մատյան ենք արտագրել… Տղային տանում
եմ, որպեսզի նա էլ սովորի մեր տոհմական գործը:

— Հը՜մ…— փնչացրեց իշխանը և դարձավ ծառաներին:— Հա՛ց տվեք, մի՛ս
տվեք մարդուն:

Ինչ-որ մեկը խորոված մսի մի պատառ
պարզեց ինձ: Իսկ իշխանը նշանացի
հասկացրեց, որ մոտենամ: Վահագն Հայկակի ձեռքն ամուր բռնած, ես մի քայլ
մոտեցա: Պատառը ծամելուց և կուլ տալուց հետո իշխանը հարցրեց.

— Մո՞գ ես:

— Չէ՜, սովորական գրիչ եմ, տե՛ր իմ:

— Դու մոգ ես ու կարողանում ես գուշակել ապագան:

— Սխալմունք կա, տե՛ր իմ,— ասացի
ես:

— Եվ քո տղան, երևի քեզնից սովորած՝ համոզում է, որ Պարսկաստան չգնամ, համոզում է, որ ետ դառնամ և հանդուրժեմ բոլոր վիրավորանքները… Ասում, որ եթե գնամ Հազկերտի մոտ,
արհավիրք կգա ժողովրդի գլխին: Իսկ
ի՞նչ գիտե, թե ինչ է լինելու… Ուրեմն,
դուք երկուսդ էլ ապագան գուշակել գիտեք…

— Տե՛ր իմ, ոչ ոք չի կարող ապագան
գուշակել,— ասացի ես ու այնպես սեղմեցի Վահագն Հայկակի ձեռքը, որ տղան
տնքաց: Ավելի լավ է այդպես տնքա, քան
թե ընկնի մեր խոսակցության մեջ:—Բայց
մի բան ճշմարիտ է, որ ներկայի մեջ կատարված ամեն մի գործ իր ընձյուղն է
արձակում ապագայում… Եթե դու վիրավորվել ես բիրտ ու անարդար վերաբերմունքից, ուրեմն հենց դրա համար պատասխան պահանջիր և ոչ թե լքիր քո
հայրենիքը ու թշնամուն մերձեցիր:

— Իսկ դու ի՞նչ գիտես, թե վիրավորվել եմ… Որտեղի՞ց գիտես: Լրտեսե՞լ ես,
անիրավ…— գոչեց Վարազվաղան իշխանը, և նրա աչքերի սպիտակուցները շողացին՝ մթան մեջ արտացոլելով կրակի
կարմիր լեզվակները:

— Տեր իմ, իշխան,— անվրդով ասացի ես,— շեներում հենց միայն խոսում
են, որ նեղացել ու անցնում ես թշնամու
կողմը: Ի՞նչ զարմանալի բան կա, որ
երբ քո նման համբավ ունեցող ու քաջ
իշխանը ճամփա է ելնում, այդ մասին
տարածվում են շշուկներ:

Վարազվաղան իշխանը ծանրումեծ ոտքի ելավ, ճարպոտ ձեռքերը սրբեց դաբաղած կաշվից կարած կրծկալին, հետո
դանդաղ քայլեց դեպի վրանը: Լուսինը
քիչ առաջ էր երևացել դիմացի սարի գագաթից… Վահագն Հայկակի ձեռքն ամուր բռնած՝ լուսնի լույսի տակ հայացքով հետևում էի նրան: Իսկ զորականները, որոնք շրջապատել էին մեզ, կամացկամաց մոտենում և ավելի ու ավելի էին
նեղացնում շրջանը:

Վրանի մուտքի մոտ իշխանը հապաղեց, հետո շրջվեց ու գոչեց.

— Լա՜վ հսկեք դրանց… Վաղն առավոտյան երկուսին էլ կկախենք: Ու մտավ
վրան:

Մեզ շրջապատած զորականները հիասթափված իրար նայեցին: Պահակներից երեք հոգի մեզ մոտեցան ու քշեցին
դեպի խոշոր քարակտորը, որի մյուս երեսը լվանում էին գետի ջրերը: Այստեղ
նրանք կապոտեցին մեր ոտքերն ու ձեռքերը, գլորեցին գետնին, իսկ իրենք էլ
մեկ-երկու քայլի վրա մեկնվելով, քիչ հետո խորը քուն մտան:

— Մեզ կկախե՞ն,— շշուկով հարցրեց
Վահագն Հայկակը:

— Քեզ ո՞վ է թույլ տվել, որ երևաս
այս կողմերում,— ասացի ես:



— Եկա համոզելու, որ իշխանը չփախչի պարսիկների մոտ:
— Եվ որպեսզի Վարդանանց պատերազմը չլինի:
— Ու մարդիկ էլ չկոտորվեն:
— Դու շատ լավ գիտես, որ պատմության մեջ ուղղումներ չի կարելի մտցնել:
— Ուրեմն, թողնենք, որ մարդիկ կոտորվե՞ն,— բողոքեց Վահագն Հայկակը:
— Շատ ափսոս, որ ժամանակի մեջ այդքան մեծ ու փոքր պատերազմներ են եղել: Եվ շա՜տ ափսոս, որ մարդիկ էլ կոտորվել են ու կոտորվել... անթիվ ու անհամար... Բայց միևնույն է՝ պատմությունը սրբագրել չի կարելի: Դու եկել ես, որպեսզի կանխես Վարդանանց պատերազմը: Այսինքն, մեր պատմությունից վերացնես Ավարայրի ճակատամարտը: Իսկ դա նույնն է, թե մոռանանք: Չհիշենք: Ջնջենք մեր հիշողությունից:— Ես խոսում էի ու միաժամանակ քարակտորի եզրին քսելով, փորձում էի մաշել ու կտրել այն թոկը, որով կապոտել էին բազուկներս:— Այն ամենը, ինչ եղել է մեր պատմության մեջ՝ ժողովրդի դասն է: Եվ այդ դասն անցնելով է, որ ժողովուրդը կարողանում է ապրել, շարունակել իր կյանքը, գոյությունը... Հիմա դու ուզում ես ջնջել Ավարայրի ճակատամարտի դասը: Իսկ մտածե՞լ ես, թե առանց այդ պատմական դասի, նաև շատ ու շատ ուրիշ դասերի, մեզնից ինչ կմնա...
— Ի՞նչ կմնա,— հարցրեց Վահագն Հայկակը:
— Ոչի՜նչ: Մեզնից ոչինչ չի մնա: Առանց անցյալի ժողովուրդը ապագա էլ չունի: Իսկ միայն ներկայի մեջ ապրում են աշխարհի բոլոր կենդանի արարածները, բացի մարդուց:
Առավոտյան պահակները քանդեցին մեր ոտքերի կապերն ու տարան դեպի քիչ հեռու կանգնած խոշոր ու սաղարթախիտ ծառը, որի հաստ ճյուղից ծայրը օղակ արած երկու պարան էր կախված:
— Մեզ հիմա կկախեն,— ասաց Վահագն Հայկակը:— Իսկ հետո Հազկերտը նամակ կգրի հայ նախարարներին... Հետո էլ պատերազմը կսկսվի: Տարիներն ու դարերը կանցնեն... Ու ոչ ոք չի էլ իմանա, որ փորձել են համոզել Վարազվաղան իշխանին: Իսկ հայերը այդպես էլ կշարունակեն մնալ բռնակալների տիրապետության տակ:
— Սպասիր,— ասացի ես:— Կանգնիր... Ոնց որ թե ժամանակների սահմա-

նագծում ենք։— Մի քանի քայլի վրա վիթխարի ծառն էր՝ կախաղանի պարաններով։ Բայց ես զգում էի, որ ընդամենը կես քայլ անելու դեպքում հայտնվելու ենք մեր ժամանակի մեջ։— Գուցե հրաժե՞շտ տանք իշխանին։

— Վարազվաղա՜ն...— զիլ ձայնով գոչեց Վահագն Հայկակը,— ինչքան էլ պատճառ բռնես, թե տոհմից ես վիրավորվել, միևնույն է, դու մի սովորական դավաճան ես։

— Ի՞նչ,— տեղից վեր ցատկեց իշխանը։— Ի՞նչ ասացիր...

— Դա-վա-ճան ես...— կրկնեց Վահագըն Հայկակը։

Իշխանը մոլեգնած շուրջը նայեց, հետո իր մոտ կանգնած զորականի ձեռքից նիզակը խլելով, թափով նետեց մեր կողմը։

Ես լսեցի նիզակի չարագուշակ սուլոցը, բայց նույն պահին էլ Վահագն Հայկակի հետ ցատկեցինք սահմանագծից այն կողմը։

Եվ հայտնվեցինք մեր ժամանակի մեջ։ Իսկ այնտեղ, հեռավոր հինգերորդ դարում, փախստական իշխանի նետած նիզակը մխրճվեց գետնին, և թե՛ ինքը, թե՛ զորականները զարմանքից պապանձվեցին, տեսնելով, թե ինչպես հենց նոր, իրենց դիմաց կանգնած ծերունին ու մանչուկը տեսիլքի պես աներևութացան։

Ես բարկացած սեղմեցի Վահագն Հայկակի ձեռքը։ Այնպես սեղմեցի, որ նա տնքաց։ Բայց չբողոքեց, որովհետև գիտեր՝ մեղավոր էր։

Այդպես, ձեռքն ամուր բռնած, ես քայլեցի դեպի տուն։ Ճանապարհին հանդիպող դրացիները զարմացած նայում էին մեզ, ավելի ճիշտ՝ մեր կապոտած դաստակներին։ Երբ հասանք շքամուտքին, ասացի.

— Եվ լավ կլինի, որ ականջիդ օղ անես... Եթե քո ժողովրդի համար մի լավ բան ես ուզում անել, ոչ թե պատմության գործերին խառնվիր, այլ անելիքդ քո ժամանակի մեջ արա։ Իսկական տղամարդու պես...

— Ի՞նչ է, ես իսկական տղամարդ չե՞մ,— բողոքեց Վահագն Հայկակը։

Ես ոչինչ չպատասխանեցի, որովհետև բոլոր ժամանակներում էլ այնպիսի հարցեր կան, որոնց պատասխանները տալու են հենց իրենք՝ փոքրիկ տղաները։

Եվ հենց այդ պահին էլ նրանք դառնում են իսկական տղամարդ։

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



«ԶՈՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿ»



ՄԵԼԻՔ ՉԱՓԱՆՅԱՆ, 14 տ.

Վրացական ՍՍՀ, Բոգդանովկայի շրջան, գյուղ Փոկա։



Ձմեռ է անհուն,
Մահվան պես մռայլ,
Ասես իջել է դաշտերին բոլոր
Անկենդանության մի ճերմակ սավան՝
Թողնելով իր տակ
Կանաչին տվող լայն հեռաստաններ
Եվ հեռուներում ինչպես հուր վառվող
Կակաչների դաշտ:
Դատարկ է հոգիս, մռայլ, անկենդան,
Ինչպես իմ շուրջը փռված ձյուների
Անապատը այս:
Բա ես ի՞նչ անեմ,
Որ կսկիծներն իմ, գարուն իղձերս,
Խոհերս անձայն
Մնացել են այս ցուրտ անապատի
Սառույցների տակ:
Ես ի՞նչ անեմ, որ
Չկա մի էակ, որ տա իմ հոգուն
Ջերմության փափուկ մի տաքուկ հուսանք:
Չկա լուսայգի շաղերում բացված
Քնքշորեն բուրող մի հեզ մանուշակ:
Չկա գարունքի խինդով արբեցած
Կանաչին տվող հույսերի մի արտ:
Չկա երկնքում
Ջերմություն տվող մի շող արևի,
Որի ջերմությամբ քնից զարթնում են
Սողուններն անգամ:
Արև կա,
Սակայն ջերմություն չկա:
Գարուն է,
Սակայն գարնան շունչ չկա:
Եվ ինչքա՞ն պիտի այսպես տրտմագին
Տխրի իմ հոգին,
Եվ ինչքա՞ն պիտի այսպես սպասեմ
Գարնան գալստյան:



Ես ապրում էի մի հեռու գյուղում
Թախծոտ հոգուս հետ, տատիս մոտ պառավ,
Նա ինչ իմանար, ինչ թախիծ կար խոր
Սրտի խորքերում իր բարի թոռան:
Հոգուս մեջ չկար ոչ մի այգաբաց,
Մշուշը բախտիս ճամփան էր փակել,
Սիրտս կրծքիս մեջ կարծես բանտարկված՝
Ուզում էր կրծքիս դռները ջարդել:
Եվ մի օր հանկարծ բացվեց վառ գարուն,
Ու սրտիս դաշտը ծաղկունքով լցվեց,
Կայծակը շողաց հոգուս երկնքում,
Եվ իմ երգերից ծաղկի հոտ բուրեց:
Արդարության լույսն իմ մեջ ճառագեց,
Երբ բախտիս ամպը ուժգին որոտաց,
Ամպերի միջից արևն ինձ նայեց
Եվ ամպերի հետ երեսիս ժպտաց:



Այնքան նուրբ են քո աչքերը,
Այնքան ջինջ են ու վճիտ,
Ինձ նայելիս զեփյուռի պես
Շոյում ես դու մեղմ հոգիս:

Ի՞նչ իմանա հոգիս սակայն՝
Ով կա քո ջինջ աչքերում,
Ի՞նչ իմանամ՝ ում ստվերն է
Գիշերը քեզ այցելում:

Եվ ի՞նչ գիտես՝ քո հայացքով
Իմ հոգում ես լույս վառում,
Ի՞նչ իմանաս, որ պոետիս
Խենդ հույսերն ես գուրգուրում:

Այնքան նուրբ են քո աչքերը,
Այնքան սիրուն, կենսաբույր,
Քո հայացքն է մութ երկնքի
Լույս աստղերը վառ պահում:



Ես ուշ աշունն եմ սիրում
Ոսկեգույն ու գունազեղ,
Երբ արևն է հեռանում
Դեպի հեռու երկրներ:
Երբ երկիրն է զարդարվում
Մուգ գույներով տխրության,
Եվ հովիվն է տխրադեմ
Սարից իջնում ցած:
Երբ ծառերը գույնզգույն
Օրորվում են անտառում,
Եվ տերևը վախեցած
Սփռվում է պաղ քամուց:
Երբ դաշտերում մոլորված
Կովն է անուշ բառաչում,
Եվ լուսինն է փայլփլում
Մութ երկնքում ամպամած:

Ես ուշ աշունն եմ սիրում
Ոսկեգույն ու գունազեղ,
Երբ արևն է հեռանում
Դեպի հեռու երկրներ:



Անձրև է դրսում՝ ամպոտ եղանակ,
Մեղեդին նորից ծորում է անուշ,
Կաթիլների տակ ինձ նման մենակ
Դողում է կանաչ տերևը քնքուշ:

Հիշում եմ անցած օրերն իմ ուրախ՝
Ինչպես մի անուշ հոգու երազանք,
Եվ իջնող մեղմիկ երեկոն խաղաղ՝
Որպես մանկական հոգու անրջանք:

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԹԱՐՎԵՐԴՅԱՆ
Երևանի Ն. Կրուպսկայայի անվ.
միջն. դպրոց, 9-րդ դաս.




Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Դպրոցն անհետացավ: Հենց այդպես, մի օր անսպասելի չքացավ: Երեկոյան, երբ մենք ֆուտբոլ էինք խաղում, վեհաշուք կանգնած էր հրապարակում, իսկ առավոտյան արդեն չկար: Մնացել էր միայն մի սենյակ՝ տնօրենի առանձնասենյակը: Ծատ տարօրինակ էր հրապարակի կենտրոնում տեսնել այդ ցածր, ուղղանկյուն շինությունը՝ կաշեպատ, հաստ դռնով: Առավոտյան հավաքվեցինք թափուր հրապարակում և չգիտեինք՝ դաս կլինի՞ արդյոք, թե՞ մեզ տուն կուղարկեն: Ի

վերջո բացվեց առանձնասենյակի կաշեպատ դուռը, տնօրենը դուրս նայեց ու խիստ ասաց.

— Ներս անցիր:

Երբ զգուշորեն ետևիցս ծածկեցի դուռը, նա ինձ առաջարկեց նստել այնպիսի հեզահամբույր ձայնով, ասես նրա առաջ ոչ թե ես, այլ միջնակարգ կրթության տեսուչն էր:

— Սա այնքան էլ հաճելի արարք չէ,— ասաց նա:— Չեմ ուզում դիմել իշխանություններին՝ հետաքննությո՜ւն, քաշքշո՜ւկ... Չէ՞ որ ուսումնական տարվա վերջըն է: Համոզված եմ, որ դու անպայման կգտնես այս թեթևամիտ արարքի հեղինակին: Միանգամայն վստահում եմ քեզ:

— Շնորհակալություն, բայց ես, հարգարժան տնօրեն, չեմ պատկերացնում, թե ինչպես կարող եմ դրանից գլուխ հանել,— պատասխանեցի և գլուխս կախեցի, ինչպես պատշաճ է միջնակարգ դպրոցի համեստ սանին:

— Շատ լա՜վ էլ պատկերացնում ես: Իսկ ես խոստանում եմ վերացնել քո երկուսները: Դե, ինչպես, պայմանավորվեցի՞նք:

Առաջարկը հրապուրիչ էր, քանի որ, իսկապես, երկուսներս քիչ չէին: Խոսքը մեր մեջ, վերջերս զարմանալի մի ծուլություն է իջել վրաս:

— Կմտածեմ,— ասացի ես:

— Մտածել պետք չէ, առանց այդ էլ դա քեզ մոտ չի ստացվում: Ավելի լավ է՝ իսկույն գործի անցնես:

Բարի: Առանձնասենյակից դուրս եկա և հավաքվածների անհամբեր հարցերի ու նախանձոտ հայացքների ուղեկցությամբ, հպարտ հեռացա հրապարակից: Ուղղվեցի դեպի Մունջենց տուն: Տնօրենի մոտ, իհարկե, այնպիսի տեսք ընդունեցի՝ իբր չգիտեմ, թե ով էր դպրոցը փայտիկի մի հարվածով վերացրել, իսկ ինքս հո՜ կռահում էի:

Ի պատասխան իմ թակոցի, դռան ետևից իր ձագարաձև քիթը հանեց Մունջը: Ես բռնեցի այդ ձագարից և նրան դուրս հանեցի:

— Ուժդ ես ցույց տալիս, հա՞...,— լալագին նվնվաց նա:— Քո քթից պետք է այդպես բռնեին, որ...

— Մունջ, հապա խոստովանիր, ի՞նչ ես արել դպրոցը,— առանց նախաբանի գործի անցա ես:

— Ի՞նչ դպրոց: Շա՜տ էլ պետքս է,— ուսերը թոթվեց նա, և ես ավելի համոզվեցի իմ կասկածների մեջ:

— Եթե խաբես, ջարդդ կտամ,— ասացի ես:

— Ի՞նչ ես ուզում ինձնից:

— Չէ՞ որ ես գիտեմ, որ հենց դու ես արել: Ուրիշ ոչ ոք չէր կարող: Անցած տարի մաթեմատիկայի ուսուցչին տիեզերք՝ հազարավոր լուսատարի հեռու տեղափոխեցիր, և նա այդ օրը չհասցրեց դասին ներկայանալ: Բոլորն էլ գիտեին, որ այդ քո ձեռքի գործն է:

— Իմ ձեռքի գործը չէր, ազնիվ խոսք, ես չէի:

— Իսկ ո՞վ էր:

— Չգիտեմ: Դպրոցը՝ հա, թող այդպես լինի, խոստովանում եմ՝ ես եմ անհետացրել, ավելի ճիշտ՝ փոխանակել:

— Ինչի՞ հետ ես փոխանակել:

Նա գրպանից ինքնաշեն մի սուլիչ հանեց:

— Խելագա՜ր,— գոչեցի ես,— ո՞վ է դպրոցը սուլիչի հետ փոխանակում:

— Սա սովորական սուլիչ չէ: Տե՜ս...

Նա փչեց սուլիչը, և իսկույն զանազան կողմերից թռան ու մեր գլխավերևում կախվեցին տարբեր գույների ու չափերի մոտ տասը թռչող ափսե:

— Տեսնո՞ւմ ես,— գոհ ասաց նա,— շատ ձեռնտու փոխանակություն է:

— Ջեռնտո՞ւ է, ասում ես: Իսկույն ետ փոխանակիր: Վերադարձրու սուլիչը նրան, ումից վերցրել ես, ու պահանջիր դպրոցը:

Ընդհանրապես Մունջը ճիշտ էր: Նրա փոխարեն, հավանաբար, ես ճիշտ նույն կերպ կվարվեի: Սակայն պարզ էր, որ այդ գործը չէին կարող երկար թաքցնել, ուշ թե շուտ գլխի կընկնեին:

Մենք կանգնել, մտածում էինք:

—Ահա թե ինչ,— ի վերջո վճռեց նա,— թող ինձ հասունության վկայական տան: Երեք տարի շուտ, երեք տարի ուշ՝ դրանից ոչինչ չի փոխվի: Վերջապես երկրաբանների հետ կարող եմ թռչել դեպի Գաղտակուրե մոլորակը՝ քարանձավներ, ջունգլիներ, դինոզավրեր, հրաքուխներ ու ամեն տեսակ սև ծակուռներ: Մի խոսքով, հաղորդիր, որ վկայականը ինձ խիստ անհրաժեշտ է: Հակառակ դեպքում դպրոցը չեմ վերադարձնի, թող փնտրեն:

— Լա՜վ, կհաղորդեմ:

Վերադարձա հրապարակ: Մտա տնօրենի առանձնասենյակը և բառ առ բառ պատմեցի նրան մեր խոսակցությունը: Ասացի, որ հասունության վկայական ան-

հրաժեշտ է տալ ոչ միայն Մունչին, այլ, ոչինչ չես կարող անել, նաև ինձ: Իբր թե այդպես է որոշել Մունչը:

— Իսկ այդ ինչո՞ւ է նա քեզ համար էլ վկայական պահանջել,— կասկածանքով աչքերը կկոցեց տնօրենը:

— Պատկերացնո՞ւմ եք, բոլորովին լրկտիացել է,— շինծու վրդովվեցի ես:— Ասում է, որ միայնակ ճանապարհորդելը ձանձրալի է: Մի դրա՛ն նայեք, իմ փոխարեն էլ է վճռել: Իսկ, գուցե, ես չեմ ցանկանում երկրաքան դառնալ... Ի՞նչ անել: Չէ, երևի դուք հարկադրված եք մեզ հանձնել այդ անիծյալ վկայականները: Հակառակ դեպքում, գիտեք՝ էլի հետաքննությո՛ւն, քաշքշո՛ւկ, հապա դպրոցի պատիվը, ուսումնական տարվա վե՛րջ...

— Թող անիծվի այն օրը, երբ բացեցին այս դպրոցը,— փչչացրեց տնօրենը: Ապա տեղից ելնելով, բացեց չհրկիզվող պահարանը և խորքից հանեց ոսկետառ գրությամբ, կաշվի հաճելի բուրմունքով վկայականները: Բացեց դրանցից մեկը, գրիչը թաթախեց և սկսեց գրել: Ես կուլ տվեցի թուքս և հուզմունքից ակամա նըստեցի բազկաթոռին: Առաջին վկայականը նա գրեց Մունչի, իսկ երկրորդը՝ իմ անունով: Հետո, ի զարմանս ինձ, նորից վկայականները դրեց պահարանի մեջ և փակեց:

— Երբ վերադարձնեք դպրոցը, այն ժամանակ էլ կստանաք: Դասերից հետո անցեք և ստացեք,— ասաց նա:

Ես գլխով հավանության նշան արեցի: Դեռ չէր եղել մի դեպք, որ տնօրենը դրժեր իր խոսքը:

— Վերադարձրու դպրոցը,— հանդիպելով Մունչին, ասացի ես:

— Ամեն ինչ կարգի՞ն է:

Ես ասացի, որ ամեն ինչ կարգին է՝ դեռ մի բան էլ ավելի:

Նա վերադարձրեց դպրոցը:

Մեկ ժամ անց մենք արդեն նստած

ՎԼԱԴԼԵՆ ԲԱԽՆՈՎ

# Հանճարեղ րոպեի պատմությունը

**Այս պրեպարատը պարզ անուն ունի. «Օզարին»:**

**Եթե ուզում եք հինգ րոպեով հանճարեղ դառնալ, մտեք դեղատուն և պատրաստի դեղերի բաժնում գնեք այն: Ճիշտ է, «Օզարինը» տալիս են դեղատոմսով, բայց դուք խնդրեք, և ձեզ կտան նաև առանց դեղատոմսի:**

**«Օզարինի» հայտնաբերողը իմ լավագույն ընկերն էր: Դեռ այն ժամանակ, երբ այդ պրեպարատը հնարավոր չէր ճարել ոչ մի տեղ՝ ինչքան էլ վճարեիր (որովհետև յուրաքանչյուր միլիգրամը առձեռն տրվում էր միայն Միացյալ Ազգերի Կազմակերպության համապատասխան որոշմամբ և մեծ տերությունների ղեկավարների համաձայնությամբ), դեռ այն ժամանակ ընկերս ինձ նվիրել էր այդ հրաշագործ դեղից մի ամբողջ հաբ:**

**— Գիտեմ,— ասաց ընկերս,— դու արդեն տասը տարի է, ինչ աշխատում ես քո գյուտի վրա: Այս հաբը կօգնի, որ փայլուն կերպով ավարտես քո աշխատանքը:**

**— Բայց այս դեղը ներգործում է միայն հինգ րոպե:**

**— Հետո՞ ինչ: Հանճարեղության հինգ րոպեն բավական է ամեն տեսակի հայտնագործության համար: Անշուշտ, եթե Նյուտոնն, օրինակ, առաջ էլ մտածած չլիներ, թե ինչ բան է ձգողականությու-**



էինք մեր ձանձրալի դասարանում ու ըսպասում էինք, թե երբ է հնչելու զանգը: Իսկ այն, չգիտես ինչու, չէր հնչում: Մունջը անհամբերությունից մերթընդմերթ թռչում էր դեպի առաստաղը, և միայն մաթեմատիկայի ուսուցչուհու զայրացկոտ հիշերն էին ստիպում նրան վերադառնալ և գրավել իր տեղը: Վերջապես զանգը հնչեց: Ես ու Մունջը առաջինը դուրս թըռանք դասարանից և նետվեցինք դեպի տնօրենի առանձնասենյակը: Սակայն մի քանի վայրկյանից ապշահար կանգնեցինք այնտեղ, ուր պետք է «Տնօրեն» մակագրությամբ կաշեպատ դուռը լիներ: Դպրոցը կանգնած էր իր տեղում, իսկ, ահա, տնօրենի առանձնասենյակը նրա հետ անհետացել էր:

Կատաղած նայեցի Մունջին:

— Ազնիվ խոսք, ես չեմ... Մտածիր, ինձ ի՞նչ օգուտ:

Ճշմարիտ էր, ի՞նչ հարկ կար նրան անելու այդ բանը, երբ վկայականը համարյա մեր գրպանում էր: Իսկ ո՞վ էր արել...

— Ասացի, չէ՞, քեզ, որ անցյալ տարի մաթեմատիկայի ուսուցչին ես չէի տիեզերք ուղարկել: Հիմա հավատո՞ւմ ես:

Այո, հիմա նրան հավատում էի: Բայց դրանից ի՞նչ օգուտ: Չկար տնօրենը, և հանելի հոտով վկայականները մեզ ոչ ոք չէր տա: Կորան մեր վկայականները: Այնտեղ, ուր նախկինում գտնվում էր տնօրենի առանձնասենյակը, հավաքվել էին ուսուցիչներն ու աշակերտները, որոնք անասելի աղմուկով քննարկում էին կատարվածը: Իսկ Մունջն ու ես ուշադիր զննում էինք նրկաներին: Մենք փորձում էինք գտնել մեղավորին, ով մեզ զրկեց հասունության վկայականներից: Իսկապես, ո՞վ կարող էր դա անել՝ Ութոտնո՞ւկը, Կենտավրո՞սը, իսկ գուցե... Ո՛չ, ո՛չ, ես հենց այնպես, ծիծաղելի է անգամ ենթադրել, սակայն այնուհանդերձ... Իսկ եթե հենց ինքը՝ տնօրե՞նը...

---

նը, հազիվ թե այդ հանճարեղ կռահումը փայլատակեր նրա գլխում՝ ընկնող խընձորը տեսնելիս: Բայց չէ՞ որ փայլատակումը տևեց հինգ րոպեից ոչ ավելի: Մեկ րոպեի ընթացքում նա տեսավ այն, ինչ առաջ չէր նկատել, տեսավ անկապ թվացող երևույթների ներքին կապը, և նրա առջև բացահայտվեց Մեծ Ճշմարտությունը: Իսկ դու կունենաս հինգ այդպիսի րոպեներ: Դու այսքան տարի ճգնել ես քո գյուտի վրա, այնքան գիտելիքներ ես կուտակել, որ բավական է մի ակնթարթ, և ամեն ինչ իր տեղը կընկնի: Վերցրու:— Եվ նա ինձ մեկնեց անգույն, թափանցիկ պլաստմասսայե տուփը, որի մեջ գտնըվում էր թանկագին հաբը:

Անձամբ ես և իմ բոլոր ընկերները չէինք կասկածում, որ ես տաղանդավոր եմ ու հաջողակ: Ինստիտուտում հպարտանում էին ինձանով, և գյուտը, որին նվիրել էի տասը տարի և համարում էի կյանքիս գլխավոր գործը, կարող էր մի գեղեցիկ օր իսկական փառք բերել ինձ: Եվ «Օզարինի» հաբը պետք է մոտեցներ այդ օրը:

Հենց որ ընկերս գնաց, ես փակվեցի սենյակում, լցրի ինքնահոսս, սեղանին դրեցի թղթերի մի կույտ, որպեսզի գրի առնեմ բոլոր հանճարեղ մտքերը, որ կըծագեն իմ գլխում, և կուլ տվեցի հաբը:

Կուլ տվեցի և սկսեցի անհամբեր ըսպասել, թե երբ կարտահայտվի իմ հանճարեղությունը և ինչ մեծ ճշմարտություններ կբացահայտվեն ինձ համար:

Եվ «Օզարինը» ինձ հուսախաբ չարեց: Ես, իրոք, հենց նույն օրը ավարտեցի իմ երկարամյա աշխատանքը, տեսա այն, ինչ ոչ ոք չէր նկատել մինչև այսօր, և մի մեծ ճշմարտություն բացահայտվեց ինձ համար:

«Օզարինի» ազդեցության հենց առաջին րոպեին ես հասկացա, որ իմ գյուտը գրոշի արժեք չուներ և ոչ մի հետաքըրքրություն չէր ներկայացնում:

Երկրորդ րոպեին հանճարեղ պարզությամբ գլխի ընկա, թե որքան անտաղանդ եմ ես:

Իսկ հանճարեղության մնացած երեք րոպեների ընթացքում ես ոգևորությամբ դիմում գրեցի ինստիտուտի դիրեկտորի անունով: Թույլտվություն խնդրեցի դադարեցնել հետագա աշխատանքը, նկատի ունենալով, որ իմ գյուտը բացարձակապես հեռանկար չունի:

Հետագայում բոլորն էլ ասում էին, որ իմ դիմումը գրված էր հանճարեղ:

Այսպես, ուրեմն, ինչպես ասացի, վաճառքի հանվեց մի նոր դեղամիջոց՝ «Օզարինը»: Պահանջեցեք բոլոր դեղատներում կամ կրպակներում:

Բայց ես ձեր փոխարեն, նախքան գընելը, մի լավ կմտածեի...

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Ամեն ինչով հմայվել,
Հիանալ եմ կամենում:

Ապրող ամեն մի շնչի
Միանալ եմ կամենում:

Ամեն սրտում տրոփել,
Ամեն մտքում թևածել,
Ամեն բացվող աչքի հետ
Լիանալ եմ կամենում:

●●●

Արթնացեք վաղ առավոտյան
Ու լուռ նայեք Արարատին:
Ես էլ ոչինչ չեմ ասի ձեզ
Սիրո մասին ու կարոտի:
Այսօ՛ր,
Վա՛ղը
Ու հավիտյա՛ն
Հույսի միջից ու հավատի
Արթնացեք վաղ առավոտյան
Ու լուռ նայեք Արարատին...

●●●

Երկինքը անխիղճ այս ի՞նչ է անում.
Թափում է, թափում
Ու չի վերջանում...

Սաղարթը, ինչ խոսք, տանիք չէ ամուր,
Ինչքան էլ որ խիտ՝ չի պատսպարում:
Բայց հավքը, հավքը
Ո՞նց է գեղգեղում,
Կարծես անձրև չէ,
Օրհնանք է տեղում,
Օրհնանք է տեղում ամպերի՛ց,
Վերի՛ց,
Երկնքի խորունկ, խորունկ խորքերից...

●●●

Կյանքով, ջանքով, ներշնչանքով,
Լցված լույսով, սիրով, կրքով,
Հավքեր, մարդիկ, բույսեր, քարեր,
Աստղեր, ամպեր, դաշտեր, սարեր,
Խոր ու խորունկ մի բարությամբ,
Համառությամբ,
Համբերությամբ,
Երկնքի տակ այս անտանիք.
Թե՛ մարդ,
Թե՛ բույս,
Թե՛ կենդանի
Միլիոն կապով իրար կապված
Մի շունչ են ու մի ընտանիք...

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

## ԱԿՈՒՏԱԳԱՎԱ ՌՅՈՒՆՈՍԿԵ




Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Օրերից մի օր Բուդդան միայնակ շրջում էր դրախտի լճափին:

Ամբողջ լճափը ծածկված էր մարգարտափայլ լոտոսներով, որոնց ոսկեվուն առէջները օդը լցրել էին անմեկնելի քաղցըր բուրմունքով:

Դրախտում առավոտ էր:

Բուդդան մտասույզ կանգ առավ և հանկարծ ջրի հայելում, որ կայծկլտում էր լոտոսի լայն տերևների միջև, տեսավ, թե ինչ է կատարվում ամենախորքերում՝ լոտոսների լճակի հատակում:

Դրախտի լճակը հասնում էր մինչև գեհենի ընդերքը:

Լճակի բյուրեղյա ջրի միջից Ասեղյա լեռն ու Սանձու գետը այնքան հստակ, այնքան պարզ էին երևում, կարծես դըրված էին մանրադիտակի տակ:

Այնտեղ, գեհենի վիհում, վխտում էր մեղավորների հսկայական խումբը: Եվ հանկարծ Բուդդայի հայացքն ընկավ Կանդատա անունով մեղավորի վրա:

Այդ Կանդատան սարսափելի ավազակ էր: Նա բազում չարագործություններ էր արել. սպանել էր, թալանել, հրդեհ գցել, բայց, համենայնդեպս, նրա հաշվին կար մի բարի գործ: Մի անգամ, անտառի թավուտով անցնելիս նա տեսել է, որ մի պստլիկ սարդ է վազում: Կանդատան բարձրացրել է ոտքը, որ ճզմի սարդիկին, մեկ էլ մտածել է. «Չէ, փոքրիկ է, բայց դե, շնչավոր է էլի: Ինչո՞ւ զուր տեղը ոչնչացնեմ»:

Եվ խնայել է սարդիկին:

Նայելով գեհենի պատկերին, Բուդդան հիշեց, որ ավազակ Կանդատան մի օր կյանք է շնորհել սարդիկին, և ցանկացավ հնարավորության դեպքում մեղավորին դուրս բերել դժոխքի խորքից, իբրև վարձատրություն այդ միակ բարի գործի համար: Այստեղ բարեբախտաբար Բուդդայի աչքովն ընկավ դրախտի սարդիկը: Նա մի սքանչելի արծաթե թել էր կախել լոտոսի զմրուխտի պես կանաչ տերևից:

Բուդդան զգուշորեն բռնեց նրբանուրբ թելիկից և ծայրը իջեցրեց մարգարտափայլ լոտոսների միջև ծփացող ջրի մեջ: Սարդոստայնի թելիկը սկսեց ուղիղ իջնել ցած, մինչև որ հասավ գեհենի ամենամութ խորքերը:

Այնտեղ, դժոխքի խորքում, Կանդատան ուրիշ մեղավորների հետ կրում էր Արյան լճի ամենադաժան չարչարանքները, մերթ դուրս լողալով ջրի երես, մերթ իջնելով խորխորատ: Ամենուրեք թագավորում էր անթափանց խավար: Երբեմն միայն, ինչ-որ բան տարտամ լույս էր արձակում խավարում: Դա սարսափելի Ասեղյա լեռան ասեղներն էին աղոտ փայլ տալիս: Խոսքեր չկան նկարագրելու այս անուրախ, սոսկալի ողջ տեսարանը: Չորս բոլորը տիրում էր գերեզմանային լռություն: Երբեմն միայն լսվում էին մեղավորների խուլ հոգոցները:

Մեղավոր հոգիները, բյուր չարչարանքներից հետո, իջնելով գեհենի ամենախորքերը, ուժ չունեին հառաչելու ու լալու: Ահա թե ինչու, նույնիսկ մեծ ավազակ Կանդատան, Արյան լճակում արյան մեջ խեղդվելով, սատկող գորտի նման, անձայն ջղաձգվում էր:

Բայց հանկարծ Կանդատան գլուխը բարձրացրեց և աչքերը հառեց Արյան լճի վրա իջած մթությանը: Այդ անհուն խավարից, հեռու հեռավոր երկնքից, նուրբ շողիկի նման փայլփլելով, սահուն իր կողմն էր իջնում արծաթյա թելիկը, ասես զգուշանալով, որ իրեն չնկատեն մյուս մեղավորները:

Կանդատան ուրախությունից ծափ զարկեց: Հարկավոր է միայն կառչել այդ թելիկից և մագլցելով բարձրանալ վեր ու

վեր: Այդ դեպքում հաստատ դուրս կըպրծնի գեհերից:

Իսկ թե բախտը բերեց, ով գիտե, մեկ էլ տեսար դրախտ էլ ընկավ: Այլևս չեն քշի Ասեղյա լեռան գագաթը և նորից չեն գցի Արյան լիճը:

Այս հույսով վառված Կանդատան երկու ձեռքերով ամուր բռնեց թելիկից և սկսեց ամբողջ ուժով վեր մագլցել:

Անշուշտ, փորձառու գողի համար դա սովորական բան էր: Բայց գեհենը դրախտի օթևանից բաժանված էր տասնյակ հազարավոր րիով:[1] Որքան էլ ճիգ էր գործադրում ավազակը, այնուամենայնիվ, հեշտ չէր հասնել լեռնային բարձունքներին: Բարձրանում, բարձրանում էր Կանդատան, բայց վերջապես հոգնությունը հաղթեց նույնիսկ այդ հսկային: Չկարողացավ առանց շունչ առնելու հասնել երկնքին:

Ճար չկար, ստիպված եղավ կարճատև դադար տալ: Այսպես կանգ առավ կես ճանապարհին. սարդի թելիկից կախված հանգստանում էր, երբ հանկարծ նայեց ներքև, խոր անդունդին:

Ջուր չէր Կանդատան այդքան համառորեն բարակ թելիկի վրայով բարձրացել վեր: Արյան լիճը, որտեղ ինքը քիչ առաջ կրել էր դաժան չարչարանքներ, ծածկվել էր անթափանց խավարով: Իսկ սարսափելի Ասեղյա լեռան գագաթը, որ տարտամ փայլում էր դժոխային անդունդի խավարում, արդեն մնացել էր ոտքերի տակ: Եթե նույն ճարպկությամբ կարողանա մագլցել, երևի իսկապես հաջողվի փախչել գեհենից:

Ամուր կառչելով թելիկից, Կանդատան առաջին անգամ բազում տարիների ընթացքում, նորից ձեռք բերեց մարդկային ձայն և գոռաց.

— Փրկվա՛ծ եմ, փրկվա՛ծ եմ:

Բայց հենց նույն պահին զարմանքով հանկարծ նկատեց, որ մյուս մեղավորները նույնպես՝ անթիվ, անհամար, կպել են թելիկին և մրջյունների շարանի նման իր ետևից սողում են վեր:

Կանդատան վախից ու զարմանքից ապուշի նման բերանը բացած, աչքերն էր ճպճպացնում:

Այդ բարալիկ թելիկը միայն իր ծանրությանը հազիվ է դիմանում, ինչպե՞ս պիտի պահի այդքան շատ մարդու:

Եթե թելիկը կտրվի, այդ դեպքում ինքը, հենց ինքը նույնպես, որ արդեն հա-

[1]) րի – չափի միավոր, հավասար է 3,9 կմ:



մարյա տեղ է հասել, գլխիվայր ետ կըթոչի դժոխք: Եվ՝ մնաս բարով, փրկության հույս:

Մինչ այս մտքերի մեջ էր, մեղավորները ամբողջ պարսերով դուրս էին սողում Արյան լճի մութ խորքերից: Հարյուրավոր, հազարավոր մեղավորներ, երկար շղթա կազմած, շտապով վեր էին բարձրանում բարակ շողիկի պես փայլփըլող թելիկի վրայով: Անհրաժեշտ էր արագ մի բան ձեռնարկել, թե չէ թելիկն իսկապես կկտրվեր և ինքը ետ կթոչեր անդունդ:

Եվ Կանդատան ամբողջ ձայնով ոռնաց.

— Հե՜յ, մեղավորներ, սա իմ թելիկն է: Ո՞վ է Ձեզ թույլ տվել սողալ նրա վրայով: Դեհ, շուտ արեք, իջե՛ք, իջե՛ք ներքև:

Բայց ի՞նչ պատահեց այդ վայրկյանին:

Թելիկը, որ մինչ այդ ամուր, անվնաս էր, ճռթոցով կտրվեց հենց այն տեղից, որտեղից բռնել էր Կանդատան: Նա դեռ աչքն էլ չէր թարթել, երբ հոլի պես պըտըտվելով, սուլոցով ճեղքեց օդը և գըլխիվայր իջավ, իջավ և ընկավ անթափանց խավարի խորքերը:

Միայն թելիկի կարճ ծայրն էր մնացել կախված և բարալիկ շողի նման փայլփըլում էր գեհենի անաստղ, անլուսին երկնքում:

Լոտոսի լճափին կանգնած Բուդդան տեսավ ամեն ինչ՝ սկզբից մինչև վերջ: Եվ երբ Կանդատան նետված քարի պես սուզվեց Արյան լճի հատակը, տխրած Բուդդան շարունակեց իր զբոսանքը:

Կանդատայի սիրտը կարեկցել չգիտեր, նա մտածում էր սոսկ իր մասին, թե ինքըն ինչպես փրկվի գեհենից, և դրա համար ստացավ արժանի պատիժ, նորից ընկավ դժոխքի խորխորատ: Որքա՜ն ամոթալի և ողորմելի էր այդ տեսարանը Բուդդայի աչքին:

Բայց լճափի լոտոսները մնացել էին անտարբեր: Նրանց մարգարտափայլ ծաղիկների բաժակները մեղմ օրորվում էին Բուդդայի ոտքերի մոտ: Եվ Բուդդայի ամեն քայլափոխից լոտոսների ոսկեվուն առէջները չորս բոլորը լցնում էին անմեկնելի քաղցր բուրմունքով:

Դրախտում ժամանակը մոտենում էր կեսօրին:

Հուլիս, 1918 թ.

**Թարգմանեց ՍՈՖԻ ԱՎԱԳՅԱՆԸ**

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

**ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ**

# Բարություն

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

«Բարին ընդ ձեզ». սա շատ հին խոսք է: Մարդիկ իրար մաղթել են, որ բարին միշտ իրենց հետ լինի: Ահա թե ինչու իրար հանդիպելիս բարի լույս են ասել ու բարի օր, բարի գիշեր են մաղթել և բարին ցանկացել: Եթե մեկին օրհնել են, ասել են «բարի բախտի արժանանաս»: Մեկը նոր զգեստ է հագել, ասել են՝ «բարով հագնես, բարով մաշես»: Մեկը նոր տուն է կառուցել՝ «բարով վայելես» են մաղթել: Մեկը հյուր է եկել՝ «գալդ բարի» խոսքով են դիմավորել: Մեկնել է՝ «երթաս բարի» են ասել: Ահա այսպես բարության մաղթանքը մուտք է գործել մարդկանց խոսակցության, բառապաշարի, կենցաղի ու սովորությունների մեջ շատ հին ժամանակներից սկսած: Այսպես է եղել, քանի որ մարդիկ միշտ բարության տենչանք են ունեցել, միշտ բարին են ցանկացել միմյանց ու խուսափել են չարից, նշավակել են չարը:

Գերմանացի ականավոր գրող Ֆրիդրիխ Շիլլերն ասում էր, թե միայն նա կարող է ջերմորեն սիրել բարին, ով ընդունակ է ամբողջ հոգով ատել չարիքը:

Ահա թե ինչու հանուն բարու հաղթանակի են պայքարել մարդկության մեծ անհատները: Հանուն բարու են պայքարել և հաճախ էլ զոհվել, անմահացել սերունդների հիշողության մեջ:

Բարին եղել է ու կա մարդկային հոգու ամենամեծ առաքինությունը: Իսկ բարությունն ինքնանպատակ չէ, բարին նաև պայքարող է, հասարակության առաջմղիչ ուժն է, այն մեծ պայքարի ուժը, որ

մարդկության ծննդից մինչև այսօր ուղեկցում է նրան: Մի մեծ երևույթ, որի վրա տեսություններ են կառուցվել, ասված-ասացվածքներ, զրույցներ ու հեքիաթներ ստեղծվել, առակներ ու բանաստեղծություններ, պատմվածքներ ու վեպեր, սիմֆոնիաներ ու կտավներ, ողբերգություններ ու կատակերգություններ:

Մարդկային հասարակությունն իր ծննդյան օրից որքան պաշտել է բարին, նույնքան էլ ատել է չարը:

«Չարը բարուն հակառակ է»— հասնելով այս պարզ, բայց մեծ իմաստության, մարդիկ դարերով հավատացել են, թե և՛ բարիքը, և՛ չարիքը երբեք չեն մոռացվում: Հիշո՞ւմ եք Թումանյանի անմահ խոսքերը «Թմկաբերդի առումը» պոեմից.

Չարն էլ է միշտ ապրում անմեռ,
Անեծք նրա չար գործին...

— Եղիշե պատմիչն էլ իր «Վարդանանց պատմությունը» մատյանում, խոսելով Վասակ Սյունու գործած դավաճանության ու չարիքների մասին, գրում է. «Այս հիշատակարանը գրվեց նրա մասին, նրա հանցանքները կշտամբելու և նրան մեղադրելու համար, որպեսզի ամեն մարդ, որ լսի ու իմանա այս բանը, նզովք կարդա նրա հետևից և նրա գործերին ցանկացող չլինի»:

Եվ ահա թե ինչու, պատանի բարեկամ, այն հեռավոր ժամանակներում՝ միջնադարում, հատուկ խրատներ կային քո տարեկիցների համար, ուր ուսուցվում էր հեռու մնալ մոլորություններից ու վատ արարքներից: Դրանցից մեկում խրատում էին. «Վա՜յ նրանց, ովքեր չարին բարի են ասում և բարուն՝ չար, քաղցրին՝ դառն, լույսին՝ խավար, և խավարին՝ լույս»: Սրանով ոչ միայն պատանիներին սովորեցնում էին տարբերել միմյանցից բարին ու չարը, այլև՝ երբեք-երբեք չկեղծել, թշնամի լինել շողոքորթությանն ու քծնանքին, նաև՝ անտարբերությանը: Խրատում էին երբեք չարիք չգործել, որովհետև չարիք գործողն ինքն էլ չարի զոհն է դառնում: «Որդյակ, քո ընկերոջ մասին չար բան մի մտածիր, քանի որ մի օր էլ դու չարի պատճառով կկորչես»,— ասում էր խրատներից մեկը:

Իսկ որքա՞ն բարձր էր գնահատվում բարի անունը. «մարդը, որ բարի անուն չունի, ավելի լավ է մեռած լինի, քան թե կենդանի»:

Պատանի բարեկամ, հիշո՞ւմ ես հայկական և ուրիշ ժողովուրդների հեքիաթների բարի երիտասարդին, որն իր նպատակի ճանապարհին օգնում է զառամյալ ծերունուն կամ տատիկին, փորձանքից ազատում է կենդանիներին և թռչուններին: Եվ սա անում է բարությունից, բարի գործ կատարելու բնական ցանկությունից մղված: Բայց ահա, երբ գալիս է ճակատագրական պահը և նա ընկնում է նեղության մեջ կամ բանտարկվում է չար ուժերի կողմից, նրանք բոլորն իրենց խորհուրդներով օգնում են և ազատում փորձանքից: Ահա այդպես է, ըստ ժողովուրդների մտածողության, հատուցվում բարի գործը: Այսինքն՝ բարին հատուցվում է բարությամբ: Սա ժողովրդական մտածողության ու մանկավարժության մի ամբողջ համակարգ էր և ճիշտ մտածողություն էր: Այդ բարությունը հարկավոր էր ժողովրդին ոչ միայն որպես հավատ ու հավատամք, հույս ու նեցուկ չար ու նեղ օրերում, այլև խիստ անհրաժեշտ էր իր զավակներին այդ ոգով կրթելու համար: Քանզի մարդիկ լավ էին գիտակցում, որ հեքիաթն ու զրույցը շատ կարևոր դաստիարակիչ ուժ ունեն և նաև դրանց օգնությանն էին դիմում:



Ահա թե ինչու ժողովուրդը սիրում էր իր բարի հսկաներին, նրանց ուժին էր ապավինում և անսահմանորեն հավատում էր նրանց հաղթանակին: Դրա լավագույն ապացույցը մեր «Սասունցի Դավիթ» էպոսն է, Դավթի հրաշալի կերպարը: Մեր էպոսն, ի թիվս իր մեծագույն արժանիք-



ների, նաև բարության գովք է: Բարության մարմնացում են ժողովրդի սիրած հերոսները, որոնք իրենց ուժը միշտ էլ ի սպաս են դնում ժողովրդի երջանկության: Այսպիսին են Սանասարն ու Բաղդասարը, Մեծ Մհերն ու Փոքր Մհերը, Դավիթը: Նրանք միշտ էլ բարիք են գործում, բարի գործեր կատարում, և ժողովուրդը անսահմանորեն սիրում է նրանց: Նրանք զրկվածների ու ընչազուրկների պաշտպանն են, չարի թշնամին:

Այսա բարության հանդեպ այս սերն ու հավատն անցել են մեր ողջ գրականության միջով՝ բանավոր թե գրավոր:

Բարու և չարի մասին հայկական միջնադարյան մի այսպիսի զրույց է հասել մեզ: Մի մարդ կար, որի անունն էր Բարի, և սա մի քլունգ ուներ, որով ճանապարհ էր շինում, և որպես վարձ՝ մարդիկ նրան հաց էին տալիս:

Եվ մի մարդ կար, որի անունը Չար էր, և սա եկավ Բարու մոտ և ասաց. ես քեզ հետ եմ ապրելու:

Մի քանի օր անց Չարը գողացավ իր ընկերոջ քլունգն ու թին և կոտրեց ջրամանը: Ու երբ ծարավեցին, գնացին ջրհորից ջուր խմելու: Չարը Բարուն գցեց ջրհորն ու թողեց-հեռացավ:

Երկու քաջք եկան ու նստեցին ջրհորի եզրին, և նրանցից մեկն ասաց. «Այս երեք տարի է, որ թագավորի աղջիկը դիվահար է եղել: Եթե մեկը լինի, որ գլխից երեք մազ պոկելով, թագավորի աղջկա վրա վառի, նա կլավանա»:

Իսկ մյուսն ասաց. «Այսինչ տեղում յոթ կարաս ոսկի կա պահված, եթե մեկը գտնվի, որ հանի, դրանով կապրի»:

Այդ լսեց Բարին ու մտապահեց: Ցուտում ճամփորդներ հանդիպեցին ու նր-

րան ջրհորից հանեցին։ Սա գնաց ու առողջացրեց թագավորի աղջկան, ու թագավորն աղջկան կնության տվեց Բարիին։ Հետո գնաց ու գտավ նաև ոսկին։ Ու մի օր, երբ զբոսնում էր, հանդիպեց Չարին, և սա հարցրեց, թե ինչպես այդպիսի հարստության տիրացավ։

Բարին ամեն ինչ պատմեց։ Չարն ըշտապեց դեպի ջրհորն ու վար իջավ։ Կրկին եկան այս երկու քաջքն ու նստեցին եզրին։ Նրանցից մեկն ասաց. «Անցյալ օրը, երբ մենք խոսել ենք, հորի մեջ մարդ է եղել և մեր ասածը լսել ու այդպես էլ կատարել է»։ Ապա ելան ու հորը քարերով լցրեցին։

Եվ այս զրույցը հետևյալ խրատով է ավարտվում.

«Տեսեք, Չարը չարով կորստյան մատնըվեց, և Բարին բարիով ապրեց։ Ով որ ուրիշին հոր փորի, ինքը մեջը կընկնի»։

Ահա այս խրատը հետագայում դարձել է ասացվածք, ամրապնդվել ժողովրդի դարավոր իմաստությամբ։ Իսկ այդ իմաստությունը սնուցիչ աղբյուր է եղել նաև գրականության համար։

Ահա թե ինչու Ռափայել Պատկանյանը իր ժողովրդի համար շատ ծանր, աղետալի ժամանակներում այնպես տենչում էր.

Երնեկ թե այս նոր տարին
Վերջ տար հայու ցավերին,
Չարը երթար, և Բարին
Բույն դներ մեր սրտերին...

Իսկ Հովհաննես Թումանյանը հայրենի երկրի համար շատ դժնդակ 1918 թվականին մեծ հպարտությամբ գրում էր.

Գանձեր ունեմ անտակ, անծեր,
Ես հարուստ եմ, ջա՛ն, ես հարուստ,
Ծով բարություն, շընորհք ու սեր,
Ծոխ պարգև եմ առել վերուստ...

Այո, հոգու արտակարգ ուժ ու վեհություն էր հարկավոր, որպեսզի բանաստեղծը չար աշխարհին հակադրեր իր մեծ հավատն ու բարությունը։ Բարությունը որոշակի գործունեություն է։ Բավական չէ միայն բարին սիրելն ու բարու մասին մտածելը, այլ հարկավոր է բարուն ձգտել, բարի լինել և հավատալ ուրիշի բարությանը։

Պատանի բարեկամ, ես ցանկանում եմ, որ դու իմանաս նաև այս առթիվ հանճարեղ կոմպոզիտոր Բեթհովենի խոսքերը. «Ես չգիտեմ գերազանցության այլ հատկանիշներ, քան բարությունը»։ Ծատ լավ է ասված. բարությունը գերազանցություն է։ Ու միայն հոգով ուժեղ մարդիկ են ընդունակ բարության, բարիք գործելու։ Բարությունը ծնվում է ազնվությունից ու առաքինությունից։

Իսկ բարությունը, բարի գործը չի կատարվում ինչ-որ մեկի թելադրանքով։ Այն միայն ու միայն սեփական սրտի ու խղճի թելադրանքով է կատարվելու։ Բարությունը հնարավոր չէ կեղծել, ցուցադրել։ Չէ՞ որ անմիջապես աչքի է զարնում շինծու լինելը, կեղծ լինելը, ցուցադրական լինելը։ Ու երբ մեկը սեփական մաշկից ձգտում է դուրս գալ իբր իր բարությունը ցուցադրելու համար, տըհաճ է դառնում շրջապատին։ Այդպիսի դեպքերում բարին կորցնում է իր ազնիվ իմաստը, զրկվում իր բնականությունից և վերածվում ցուցամոլության։ Իսկ ցուցամոլությունը միշտ էլ տգեղ է, հակակրանք է առաջացնում։

Իհարկե, բարին պետք է լինի նպատակային և իմաստավորված։ Չպետք է բարիք գործել միայն բարի երևալու համար։ Բարությունը պետք է լինի ճիշտ ու ընպատակային։ Հակառակ դեպքում կզըրկվի իր վեհ իմաստից ու կարող է ծառայել նույնիսկ չարին։ Հանցագործ արարքը թաքցնելով ոչ թե բարի գործ ես կատարում մեղավորի համար, այլ օգնում ու ծառայում չարին։

Բարին ու բարությունը միշտ էլ դիտվել են կյանքի աղբյուր, կյանքի առաջմըղիչ ուժ։ Բարությունը միշտ էլ ջերմացրել է ոչ միայն իր՝ անհատի հոգին, այլև օգնել շրջապատին՝ ավելի հեշտ ապրելու։ Բարությունը միշտ էլ երջանկացրել է մարդուն, քանի որ նա միշտ գիտակցել է հասարակությանն իր օգտակար լինելը, պիտանի լինելը։

Բարությունը շատ-շատ է հարկավոր նաև այսօր՝ մեր ամենօրյա աշխատանքում ու հարաբերություններում։ Միմյանց հանդեպ բարի վերաբերմունքը որքա՞ն է օգնում մարդկանց թե՛ աշխատանքում, թե՛ շրջապատում և թե՛ ընտանիքում։ Բարությունը մարդկանց հաղորդում է եռանդ ու տրամադրություն, տալիս է ստեղծագործական կարողություն։ Դու մանկուց պետք է սովորես և ընդունակ լինես բարի գործերի։ Բարության զգացումը հետագայում քեզ շատ ու շատ է հարկավոր լինելու։ Այն քեզ կօգնի իրագործել քո նպատակները, քեզ հարգելի ու սիրելի կդարձնի կյանքում, հասարակության մեջ, քո շրջապատում և ընտանիքում։



ԷՐՍՔԻՆ ՔՈԼԴՈՒԵԼ

# Ջոն Բրեդոքը և նրա պառավը

ԹԱՐԳՄԱՆԵՑ ԱՇԽԵՆ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆԸ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ջուլիա Քրեդոքն ապրել էր երեսունհինգ տարի ու ոչ գեղեցիկ էր եղել երբեք, ոչ էլ կանացի: Երեսունհինգ տարի էր անցել՝ երիտասարդություն և հասունություն, բայց ո՛չ նրա գեղեցկությունն էր ավելացել, ո՛չ էլ կանացիությունը: Տարեցտարի ավելի ու ավելի էր տգեղացել: Տասնհինգ տարեկանից հետո, երբ օրերն անցկացրել էր սալօջախի և տաշտի մոտ, մարմինը դարձել էր մկանուտ ու չոր: Մազերն ուղիղ էին, կոշտ և ճարպոտ: Դեմքն ակոսվել էր ծանր աշխատանքի այլանդակ կնճիռներով: Տղամարդիկ Ջուլիայի մեջ ոչինչ չէին տեսել երբեք, բացի չարքաշ անասունից: Նույնիսկ Ջոն՝ ամուսինը: Ջոյի համար նա միշտ «պառավ» էր:

Եվ, ահա, նա մեռավ:

Մահը հատուցում էր: Հատուցում՝ մարմնի ու դեմքի այլանդակության, ամբողջ կյանքի համար: Նա երբեք չէր իմացել, թե ինչ բան է երջանկությունը՝ տասնմեկ երեխա, տասնչորս կով, հավեր: Եվ ութ գարշահոտ խոզ: Վերջին տասը տարիների ընթացքում Ջուլիան ոչ մի անգամ դուրս չէր եկել ֆերմայից: Աշխատանք, աշխատանք, առավոտյան չորսից մինչև երեկոյան ինը՝ աշխատանք: Ո՛չ տոն, ո՛չ քաղաք գնալ, ո՛չ էլ ժամանակ՝ ոտքից գլուխ լվացվելու: Ջոն նույնպես անընդհատ աշխատել էր: Բայց ոչ մի օգուտ նրա աշխատանքից, միայն՝ մեջքի ցավ, հոգս և աղքատություն: Ինչքան շատ էր աշխատել, այնքան աղքատացել էր: Եթե աշնանը հավաքվել էր բամբակի քսան հակ, գներն այնքան էին իջել, որ հազիվ էր փող մնացել պարարտանյութի համար, այն էլ՝ ոչ միշտ: Իսկ եթե մի ֆունտի գինը բարձրացել էր մինչև երեսուն ցենտի, բամբակը փչացել էր կա՛մ հորդառատ անձրևներից, կա՛մ երաշտից, ու ծախելու բան չէր մնացել: Այո, չարժեր առանձնապես երկար ապրել հանուն այսպիսի կյանքի, որ բաժին էր ընկել Ջոյին ու Ջուլիային:

Եվ, ահա, Ջուլիան մեռավ: Եվ նա երբեք գեղեցիկ չէր եղել, նույնիսկ երբեք գեղեցիկ չէր զգացել իրեն: Ոչ մի անգամ նրան բախտ չէր վիճակվել մետաքսե ըսպիտակեղեն հագնել, քթին դիմափոշի քսել, այտերը կարմիր շպարել կամ եղունգների տակից ամբողջ կեղտը մաքրել:

Եկավ մեռել թաղողը ու տարավ հանգուցյալին: Հաջորդ առավոտ ետ բերեց

նրան, որպեսզի երեկոյան թաղեն մեթոդիստական աղոթարանին կից գերեզմանատանը:

Բայց նա ինչպիսի՜ հրաշք բերեց ֆերմա:

Ջոն երկար ժամանակ չէր կարողանում հավատալ, որ դա Ջուլիան է:

Այնուհետև նա փնտրեց այն լուսանկարը, որ Ջուլիան ամուսնությունից մի քանի շաբաթ առաջ նվիրել էր նրան, և միայն դրանից հետո համոզվեց, որ, այնուամենայնիվ, դագաղում պառկածը իր կինն է: Ջուլիան կարծես նորից երիտասարդ աղջիկ էր դարձել:

Նրան ոտքից գլուխ մաքրեցին, մազերը լվացին հոտավետ հեղուկով: Ձեռքերն սպիտակ էին, իսկ մատները՝ մանիկյուր քսած: Դեմքը՝ կարմրաներկի ու դիմափոշու տակ, մաքուր էր ու հարթ, իսկ կախ ընկած այտերը հենված էին բամբակի վրա: Ա՜յ, Ջուլիան հիմա իսկական գեղեցկուհի էր: Ջոն պարզապես չէր կարողանում աչքերը հեռացնել նրանից: Ամբողջ օրը նստեց դագաղի մոտ, լուռ լաց եղավ և հիացավ նրա գեղեցկությամբ: Ջուլիային հագցրել էին մետաքսե գուլպաներ և ներքնաշապիկ, իսկ ներքնաշապկի վրայից՝ ծովի ալիքի գույն ունեցող, խոր կտրվածքով, անթև մետաքսե զգեստ: Շնորհիվ մեռել թաղողի վարպետության՝ նա նմանվել էր երիտասարդ չքնաղ աղջկա:

Երեկոյան դեմ գեղեցկության հետ միասին նրան թաղեցին աղոթարանին կից գերեզմանատանը: Վերջին պահին Ջոն քիչ էր մնում խնդրեր, որ թաղումը հետաձգեն հաջորդ օրվան: Բայց մեռել թաղողը նույնիսկ լսել չուզեց այդ մասին: Նա պարզապես չհասկացավ այդ տարօրինակ խնդրանքի իմաստը:

Ջուլիայի երեխաները, բացի երկու ավագներից, կարգին չէին պատկերացնում, թե ինչ էր պատահել իրենց մորը: Անցավ մի քանի տարի, մինչև որ նրանք հավատացին, թե հանգուցյալը, որին այն ժամանակ բերեցին տուն, հենց իրենց մայրն էր, Ջուլիան:

— Բայց չէ՞ որ դագաղում պառկած այն կինը գեղեցիկ լեդի էր,— ասում էին նրանք:

— Այո,— պատասխանում էր Ջոն,— Ջուլիան, ձեր մայրը, գեղեցիկ լեդի էր:

Ու նա մոտենում էր պահարանին, դարակից հանում լուսանկարը և ցույց տալիս նրանց:

Արտաշես I-ի գահակալության սկիզբը համարում են մ. թ. ա. 189 թվականը, այսինքն՝ Մագնեսիայի ճակատամարտից մոտ մի տարի հետո: Բայց իրականում Արտաշեսը դրանից առաջ էլ արդեն Մեծ Հայքի թագավորն էր: Երվանդ IV-ի ըսպանությունից հետո Արտաշեսը փաստորեն հայոց թագավոր դարձավ:

Նա իր՝ արամեերեն գրված արձանագրություններից մեկում իրեն կոչում է «Արտաշես արքա, Զարեհի որդի, Երվանդունի»: Նա ուներ նաև Բարի տիտղոսը:

Ճիշտ է, Արտաշեսը սերված էր Երվանդունիներից, բայց նա թագավորական նոր տան հիմնադիր էր Հայաստանում: Նրա գահը ժառանգած հայոց հաջորդ թագավորները Արտաշիսյաններն էին:

Արտաշեսը թագավորեց մինչև մ. թ. ա. 160 թվականը: Նրա մասին տարբեր ազգության պատմագիրներ շատ են գրել: Կարևոր տեղեկություններ է տալիս հայ պատմիչ Օղյումպը, որը հայոց Դարանաղյաց գավառի Անի քաղաքում հեթանոսական մեհյանի քուրմ էր: Նա գրի է առել շատ դեպքեր, այդ թվում՝ Արտաշեսի մասին: Օղյումպը, հավանաբար, գրում էր հայերեն, նախամաշտոցյան ինչ-որ տառերով: Այս քրմի գրածները իր գրքում օգտագործել է Մովսես Խորենացին, թեև նա այլ աղբյուրների ազդեցությամբ Արտաշեսին վերագրել է գործեր (օրինակ, Կրեսոսի սպանությունը), որոնք նա չի կատարել, իսկ նրա կատարած որոշ գործեր վերագրել է այլ թագավորների (օրինակ, Վաղարշակին):

Այլազգի հեղինակներից Արտաշես (հունարեն՝ Արտաքսիաս) թագավորի մասին գրել են Դիոդորոս Սիցիլիացին, Պոլիբիոսը, Պլուտարքոսը, Ստրաբոնը և ուրիշներ:

Այս բոլոր հեղինակները միաբերան վկայում են, որ Արտաշեսը հմուտ և ուժեղ թագավոր է եղել, ու նրա օրոք Հայաստանը հարավ-արևմտյան Ասիայի ամենահզոր պետությունն է դարձել:

Արտաշեսն իր գործերը կատարում էր Սմբատ Բագրատունու օգնությամբ: Հույն պատմագիրները Սմբատին Նիկեփոր են

---

ՈՒՂՂՈՒՄ. «Պիոներ» № 7-ի 13-րդ էջում տպագրված նկարի մակագրությունը կարդալ. ԱՐՏԱԹՅԱ ԵՎ ԲՐՈՆԶՅԱ ԶԱՐԴԵՐ ԱՐԱՐԱՏԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻՑ:





ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆՀԻՆԳԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# Արտաշես և Արտաշիսյան տուն

անվանել: Սմբատ Բագրատունին հայոց թագադիրն էր, դա այն ժամանակ շատ բարձր պաշտոն էր: Քանի որ հայոց մեջ Արտաշես անունով ուրիշ թագավորներ էլ են եղել, ուստի այս թագավորը կոչվում է Արտաշես I:

Արտաշեսն առաջնորդվում էր այն նույն սկզբունքով, որով գործում էին Արարատի թագավորության տիրակալները՝ մեկ պետության մեջ միավորել հայաբնակ շրջանները: Ըստ Խորենացու վկայության՝ հայոց այս արքան ղեկավարվում էր լեզվական սկզբունքով՝ իր պետության մեջ էր միավորում հայոց լեզվի տարածման շրջանները, և նրա տերության սահմանները ճշտվում էին հայոց լեզվի տարածման սահմանների համաձայն:

Արտաշեսն ամենից առաջ արշավեց դեպի արևելք: Հիշենք, որ դեռևս Մարաստանի հզորության ժամանակ Մեծ Հայքից անջատվել էր նրա արևելյան մի մեծ հատվածը: Դա Կասպից ծովի արևմտյան ափերից մինչև Արցախ ընկած տարածքն էր, որ կոչվում էր Փայտակարան: Արտաշեսը հաղթեց տեղի տիրակալի զորքերին և Փայտակարանը կրկին միացրեց Մեծ Հայքին: Ապա անցավ դեպի հյուսիս, պատերազմ սկսեց ալանների (օսերի) դեմ: Ետ նվաճեց Մեծ Հայքի հյուսիսային մասերը, որոնք խլվել էին Հայաստանից: Դրանք Գուգարքի հյուսիսային (մինչև Քուռ գետը) և արևմտյան հատվածներն էին՝ ներառյալ Ջավախքը:

Կարին աշխարհի (Բարձր Հայքի) մի մասը անցել էր Փոքր Հայքին: Այդ շրջաններն էլ՝ մինչև Եփրատ, Արտաշեսը կրկին միացնում է Մեծ Հայքի թագավորությանը:

Հետո արշավելով դեպի հարավ՝ գրավեց Մեծ Հայքի Կորճայք աշխարհից Սելևկյանների խլած Տմորիքը ու միացրեց իր տերությանը:

Մ. թ. ա. 1-ին դ. հույն աշխարհագրագետ, պատմագիր Ստրաբոնը նկարագրելով Արտաշեսի կատարած վերամիավորումները, վերջում Մեծ Հայքի մասին գրել է՝ «Բոլորը միալեզու են»: Այսինքն՝ Արտաշեսը կրկին միավորել է հայ ժողովրդի բնակության շրջանները: Դուրս մնաց Ծոփքը: Իսկ Փոքր Հայքը, որ նույնպես հայալեզու էր, Մեծ Հայքի կազմի մեջ առաջ էլ չի մտել:

Սելևկյանների թագավորն այդ ժամանակ Անտիոքոս IV Եպիփանեսն էր: Նա, տեսնելով Հայաստանի հզորացումը, մ. թ. ա. 165 թվականին արշավանք սկսեց հայերի դեմ: Արտաշեսը վաղօրոք իմանալով այս Անտիոքոսի մտադրությունը՝ իր զորքերն ուղարկեց Միջագետք: Այստեղ տեղի ունեցավ արյունոտ ճակատամարտ: Կողմերից ոչ մեկը չհաղթեց, բայց Անտիոքոսն այլևս Մեծ Հայքի Արտաշեսյան թագավորության դեմ չարշավեց: Նա իր ուղղությունը փոխեց և մտավ Ծոփք ու գրավեց Մեծ Հայքից անջատված այդ երկրամասը, սպանեց թա-

Հայոց Արտաշես Առաջին թագավորի արամեերեն արձանագրություններից



գավորին, որ Արտաշեսի ազգականն էր: Անտիոքոսը գրավեց նաև այլ երկրներ, այդ թվում՝ Մարաստանը: Բայց Արտաշեսի պետությունը մտնել չկարողացավ:

Փոքր Հայքից արևմուտք գտնվող Կապադովկիայի թագավոր Արիարաթը Ծոփքում թագավոր կարգեց այդտեղի սպանված թագավորի որդուն՝ Մեհրուժանին: Արտաշեսը շատ ջանքեր թափեց Ծոփքը կրկին Մեծ Հայքի մեջ մտցնելու համար, բայց արդյունքի չհասավ: Այդպիսով, Մեծ Հայքի միավորումը այդ մի կետում թերի եղավ:

Արտաշեսը երկրի ներսում էլ շատ գործեր կատարեց: Միաժամանակ Հայաստանում ապաստանեց Հռոմի ոխերիմ թշնամի, կարթագենցի Հաննիբալը, որ խոշոր քաղաքականագետ էր և զորավար: Նրա հետ խորհրդակցելով՝ Արտաշեսը Արաքս և Մեծամոր գետերի միացման վայրում նոր մայրաքաղաք կառուցեց և իր անունով կոչեց Արտաշատ (ավերակները Խոր վիրապի շրջակայքում են): Արտաշեսի ժամանակներում մի քանի նշանավոր քաղաք էլ կառուցվել է նրա հոր՝ Զարեհի անունով, այդ թվում երեք Զարեհավան (Ուրմիո լճի շրջանում, Բագրևանդում և Հավնունիքում՝ Արաքսի ափին): Չգիտենք՝ այդ քաղաքները Արտաշեսի հա՞յրն է կառուցել, թե Արտաշեսը՝ հոր պատվին:

Ապա՝ հողային բաժանումներ կատարեց. գյուղական համայնքների հողաբաժինները սահմանազատեց անհատ հողատերերի (իշխանների) հողամասերից: Այդ բաժանումների սահմաններում Արտաշեսը կանգնեցրեց քարե սալեր, որոնց վրա արամեերեն (քաղդեերեն) արձանագրություններ փորագրել տվեց: Արամեերենը պարսից Աքեմենյան կայսրության պետական լեզուն էր: Չնայած հելլենիստական այդ դարաշրջանում Հայքում ու հարևան երկրներում գրում էին հիմնականում հունարեն, բայց Արտաշեսը հին ավանդույթով իր արձանագրությունները գրել տվեց արամեերեն: Հիշենք, որ դեռևս Արարատի թագավորության վերջին շրջանում հայերն արդեն գրում էին արամեերեն:

Արտաշեսը նաև երկիրը բաժանեց զինվորական և վարչական չորս մասերի՝ հյուսիսային, հարավային, արևելյան, արևմտյան, այս մասերն էլ՝ ավելի փոքր գավառների:

Արտաշես Առաջինի ժամանակ Հայաստանի կյանքը բարեկեցիկ էր, երկիրը ծաղկում էր: Այդ է պատճառը, որ ժողովուրդը սիրեց իր թագավորին ու նրա կյանքի դեպքերը գեղեցիկ զրույցներ դարձրեց: Օրինակ, Մովսես Խորենացու գրքում պահպանվել է ալանների դեմ Արտաշեսի մղած պատերազմի մի նկարագրություն: Ալանների թագաժառանգը գերի է ընկնում հայերի ձեռքը, և նրա քույրը բարձրանալով Կոի մյուս ափին գտնվող մի ժայռի վրա, խնդրում է Արտաշեսին վերադարձնել եղբորը.

Քեզ եմ ասում, քաջ այր Արտաշես,
Որ հաղթեցիր ալանների քաջ ազգին,
Եկ, համաձայնիր իմ՝ ալանների
աչագեղ դստեր խոսքերին
Եվ տուր այդ պատանուն:
Որովհետև օրենք չէ, որ
դյուցազուններն իբրև քեն
Ուրիշ դյուցազունների սերունդը
ոչնչացնեն
Կամ որպես ծառա պահեն ստրուկների
կարգում
Ու այդպես երկու քաջ ազգերի մեջ
Մշտական թշնամություն հաստատեն:

Արտաշեսը սիրահարվում է ալանների գեղեցկուհուն, և քանի որ այդ պահին նա չէր կարող աղջկա հետ ամուսնանալու համար վճարել տասնյակ հազարավոր ոսկիներ, փախցնում է նրան: Հայ ժողովրդական երգիչները՝ գուսանները երգելով պատմել են՝

Հեծավ քաջ արքա Արտաշեսն իր
գեղեցիկ սև ձին,
Եվ հանելով ոսկեօղ շիկափոկ
պարանը
Ու որպես սրաթև արծիվ անցնելով
գետը,
Եվ նետելով ոսկեօղ շիկափոկ պարանը՝
Գցեց ալանների օրիորդի մեջքին,
Ու շատ ցավեցրեց փափուկ օրիորդի
մեջքը՝
Նրան արագ իր բանակը հասցնելով:

Ապա նկարագրել են Արտաշեսի և Սաթենիկի հարսանիքը:

Հայոց գուսանները երգելով պատմել են նաև, որ Արտաշեսին մարդիկ շատ էին սիրում, ու նրա մահվան ժամանակ շատերն անձնասպան էին լինում: Իսկ թագաժառանգ որդին՝ Արտավազդը, ասում էր.

Երբ դու գնացիր,
Ու ամբողջ երկիրը քեզ հետ տարար,
Ես այս ավերակների վրա
Ինչպե՞ս թագավորեմ:

(շարունակելի)



# Վահան Տերյան
1885—1920

## Երեկո

Երեկոն փռեց իր թևերը մութ,
Անուշ նիրհեցին երկինք ու երկիր.—
Աչքերդ փակիր, ինձ քնքուշ գրկիր,
Սուտ կյանքին խառնիր երազանքը սուտ:

Լայն ըստվերները ընկան անաղմուկ,
Անուշ նիրհեցին ծով, անտառ ու լեռ...
Ես քեզ կպատմեմ ոսկե հեքիաթներ,
Իմ սիրուն մանուկ, իմ քնքուշ մանուկ...

Կրծքիս դիր դեմքը քո տխրադալուկ,
Մոռացիր կյանքի տառապանքը մութ,
Սուտ կյանքին խառնիր ծրազանքը սուտ,
Իմ սիրուն մանուկ, իմ քնքուշ մանուկ...

Անուշ նիրհեցին ծով, անտառ ու լեռ,
Ննջեցին անուշ երկինք ու երկիր.
Աչքերդ փակիր, ինձ քնքուշ գրկիր,
Ես քեզ կպատմեմ ոսկե հեքիաթներ...

1908 թ.









ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

# ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆ ԻՐ ՀՈԳՍԵՐՈՎ

Մայրաքաղաքի 16-րդ թաղամաս տանող ճանապարհից քիչ վերև, թեքության վրա կառուցված № 185 եռահարկ դըպրոցը արդեն մեկ տարի է, ինչ գործում է։ Երբ կառուցվում էր Նորաշեն թաղամասը, դպրոցի շինարարությունը դեռ չէր սկսվել։ Բայց երբ վեր բարձրացան տասնվեց հարկանի շենքերն ու եկան բնակիչները, դպրոցի կառուցումը արագացվեց։ 1986 թվականի ամռան վերջին նորակառույց զույգ շինությունները պատրաստ էին իրենց դռները բացելու դպրոցականների առջև։

Շնորհալի ճարտարապետներ Ռուբեն Սահակյանի, Ալեքսանդր Սահակյանի, Յուրի Սաֆարյանի, Ռուբեն Եղիազարյանի և Սերգեյ Շահնազարյանի նախագծով կառուցված կրթական այս օջախը բաղկացած է 6 մասնաշենքից։ Լրացուցիչ կառուցվելու են լողավազան, հրաձգարան։ Առայժմ լողավազանի և մնացյալ երկու մասնաշենքերի կառուցումը ամբողջովին չի ավարտվել։ № 185 դպրոցը այնպես է կառուցված, որ նրա աջ և ձախ թևերը, միանալով տեղանքի թեքության հետ, առաջացնում են կիսաշրջանաձև մի ետնաբակ։ Ճարտարապետների հրաշալի մտահղացմամբ այն դարձել է բացօթյա դահլիճ, ավելի ճիշտ՝ ամֆիթատրոն, որտեղ փայտյա կորագիծ նստարանների շարքերը կտեղավորեն հարյուրավոր դպրոցականների։ Թեև դպրոցն ունի դահլիճ, սակայն հանդիսավոր արարողությունների և տոնական այլ միջոցառումների համար ամֆիթատրոնը հնարավորություն է տալիս լավ եղանակին այդ ամենը անցկացնել դրսում։ Ճարտարապետների գեղեցիկ ու յուրօրինակ նախագիծը հիմա դարձել է լուսավոր ու հարմարավետ դասասենյակներով, ըն-

դարձակ միջանցքներով, մեծ ճաշարանով, արհեստագործական, ինֆորմատիկայի, առարկայական բազմաթիվ կաբինետներով հարուստ դպրոց: Այն արագորեն շահագործման հանձնվեց, և շինարարների թողած կիսատ-պռատը դպրոցն իր ուժերով ավարտեց: Հիմա ծաղ-ծաղ վարագույրներին, գեղեցիկ ու ճաշակով նկարազարդված պատի թերթերին, ներդաշնակ ու հաճելի ներկված ցուցափեղկերին նայելիս թվում է, թե դպրոցը բազմամյա կենսագրություն ունի:

Գալուստ Սահակյանը՝ դպրոցի տնօրենը, երբեմն զրույցի ժամանակ ընդհատում է խոսքը և խորասուզվում մտքերի մեջ:

— Վարչական աշխատանքները խլում են իմ ժամանակի մեծ մասը: Դպրոցի ներքին կարգուկանոնին և ուսումնական ընթացքին բավականաչափ ուշադրություն դարձնելու համար քիչ ժամանակ է մնում, իսկ անելիքներ առայժմ շատ ունենք:

Մենք շրջում ենք դպրոցում: Ուսմասվար Քնարիկ Խաչատրյանի հետ մտնում ենք 5-րդ «բ» դասարան: Դասասենյակը հրաշալի տպավորություն է թողնում: Ուսուցչուհի Վերգինե Վարդանյանը անգլերեն լեզվի մասնագետ է: Նա նոր է սկըսել մանկավարժական գործունեությունը: Ընթերցվում է դասը: Տրվում է նոր առաջադրանք և ապա ցուցադրվում է մանկական կարճամետրաժ մի ֆիլմ: Ուսուցչուհին աշակերտների ուշադրությունը հրավիրում է անգլերենի արտասանության վրա: Միացվում է նվագարկիչը: Ընկալուչներով «զինված» աշակերտները ուշադրությամբ լսում են, թե ինչպես է արտասանվում անգլերեն տվյալ բառը, վանկը, հնչյունը: Կոմպյուտերների միջոցով այսօր աշակերտները կարողանում են լուծել ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի ամենաբարդ խնդիրներն ու վարժությունները:

Թվում է, թե ամֆիթատրոն, մարզադահլիճներ, գեղեցիկ կահավորված կաբինետներ ու հարմարավետ դասասենյակներ ունեցող դպրոցի մանկավարժական կոլեկտիվի համար ուրիշ հոգս ու անելիք չկա իրենց հիմնական աշխատանքից բացի: Բայց առայժմ կան բազմաթիվ դժվարություններ:

Փայտամշակման արհեստանոցում մենք հանդիպեցինք վարպետ-դաստիարակ Ավետիք Ոսկանյանին՝ աշխատանքային արտահագուստով աշխատելիս:

— Փայտի հետ երեխաները սիրում են աշխատել,— և մեզ ցույց տվեց մի շարք աշխատանքներ, որ պատրաստվել էին նրանց ձեռքերով,— բայց մինչև հիմա համապատասխան գործիքներ 'չունենք: Գնում ենք մեզ մատակարարող խանութը՝ անհրաժեշտ գործիքներ ու նյութեր ըստանալու, ասում են՝ չկա, կամ՝ կա, բայց այդքան շատ տալ չենք կարող: Հիմա, օրինակ, սոսինձ չունենք, փայտ չունենք, և ես ամեն անգամ չեմ կարող աշակերտներին խնդրել, որ տներից սոսինձ ու սըղոց բերեն:

Դժգոհելու պատճառ կա, իսկ թե մինչև երբ պիտի շարունակվեն նման քաշքշուկները, հայտնի չէ: Այդ ընթացքում, իհարկե, աշակերտները անգործ չեն մնում, սակայն նման պայմաններում դասերը բավարար արդյունք տալ չեն կարող:

Դպրոցի գրադարանը համարյա դատարկ է: Աշակերտների թվաքանակը շուտով կմոտենա 800-ի, սակայն ծըրագրով անհրաժեշտ գրականության երկու տոկոսն անգամ չկա: Գրադարակների վրա ընդամենը երկու տասնյակի չափ գրքեր են շարված:

— Ամեն ամիս 100 ռուբլի ընդհանուր գումարով գիրք ենք ստանում,— ասում է գրադարանավարուհին:

Դպրոցը հնարավորություն ունի միանգամից գնելու անհրաժեշտ գրականությունը, բայց թույլ չեն տալիս: Ինչո՞ւ: Եթե այսպես շարունակվի, ապա աշակերտը պիտի սպասի մոտ 10—15 տարի, որպեսզի նորից վերահրատարակվեն, ասենք, Ա. Բակունցի կամ Ս. Զորյանի գործերը: Թվում է՝ մտահոգվելու հարկ չկա, որովհետև հիմա բոլորն էլ իրենց բնակարաններում անձնական գրադարան ունեն, կվերցնեն, կկարդան: Բայց մի՞թե դա հարցի արդարացի լուծում կլինի:

Չնայած այս ամենին, դպրոցի մանկավարժական կոլեկտիվում առողջ ու գործարար մթնոլորտ է տիրում, իսկ դըպրոցում՝ կարգուկանոն ու մաքրություն: Նորաբաց այս դպրոցի հետ իրենց բախտը կապած ուսուցիչներին վերոհիշյալ «մանրուքները», իրոք, խանգարում են, բայց վհատեցնել չեն կարող: Ու եթե հնարավորություն ընձեռվի, նրանք կարող են իրենց նախաձեռնությամբ նոր ուսումնական տարին սկսել արդեն առանց «մանրուքների»:

# «Ես աղքատ եմ, սևամորթ, կույր, բայց...»



Մյունխեն: Ստուդիայում, որտեղ ձայնագրվում է երաժշտական հաղորդումը, կարծես նախազգալով հերթական աստղի քմահաճույքները, անհանգիստ ետ ու առաջ է քայլում հնչյունային ռեժիսորը: Ներս են բերում Սթիվի Ուանդերին: Այո, բերում են, որովհետև նա ի ծնե կույր է:

Սթիվի Ուանդերը երգիչ է, բազմաթիվ երաժշտական գործիքներ է նվագում, կոմպոզիտոր է, բանաստեղծ, վերադաշնակող և ինքն էլ զբաղվում է իր ձայնասկավառակների արտադրությամբ:

Սթիվեն Ջադկինսը ծնվել է Սեգինոու ամերիկյան փոքրիկ քաղաքում: Նա ընտանիքի վեց երեխաներից երրորդն էր և ի ծնե կույր: «Բայց ես իմ հասակակիցներից ետ չէի մնում, խաղում էի, հեծանիվ էի քշում, նույնիսկ ծառեր էի մագլցում»:

Սթիվենը իր կուրությունն ընդունում է որպես կյանքի փաստ, որի հետ հարկավոր է հաշտվել: Բացի այդ, ծնողները բուժման համար դրամ չունեին: Սակայն բնությունը փոխհատուցել է իր հասցրած վնասները, օժտելով Սթիվենին բացառիկ երաժշտական ընդունակություններով: Փոքր տարիքից նա ձգտում էր զարգացնել իր լսողությունը: Բարեկամները ու ծանոթները մանր դրամ էին գցում խոհանոցի սեղանին, և Սթիվին ձայնի օգնությամբ կարողանում էր որոշել, թե ինչ դրամ էր դա: Ստեղների դասավորությունը հիշելով, նա սովորեց մեքենագրել: Ձգտում էր տեսողությունը փոխարինել լսողությամբ: «Ես երբեք չեմ իմացել, թե ինչ է նշանակում «տեսնել», ամեն ինչ ընկալել եմ միայն լսողությամբ»:

Երբ լրացավ տղայի տասը տարին, ծնողները աշխատանք գտնելու հույսով տեղափոխվեցին Դեթրոյտ: Այդ տարիներին Դեթրոյտը համարվում էր ոչ միայն ավտոմոբիլաշինության, այլև նեգրական «սոուլ» երաժշտության մայրաքաղաքը: Այստեղ Սթիվենին լսեց ընտանիքի բարեկամ և հայտնի «Միրաքլզ» երաժշտական խմբի անդամ Ռոննի Ռայթը: Հաջորդ ունկնդրությունը կայացավ արդեն «Թամլա-Մոթաուն» խոշոր նեգրական ձայնագրման ֆիրմայի պրեզիդենտ Բեր-

րի Գորդիի մոտ:

Բերրի Գորդին լինելով երաժիշտ և կոմպոզիտոր (նրա երգերը կատարում էր «Բիթլզ» վոկալ-գործիքային խումբը), հիացավ տղայի բարձր, ճկուն ձայնով, և անմիջապես հրավիրեց նրան ձայնագրվելու: Սթիվենը ստացավ Լիթլ Սթիվի Ուանդեր (Փոքրիկ Հրաշք Սթիվի) կեղծանունը: Իր առաջին ալբոմը Սթիվին ձայնագրեց, երբ 11 տարեկան էր և անվանեց «Հարգանքի տուրք քեռի Ռեյին»: Այն նվիրված էր նշանավոր նեգր երգիչ, դաշնակահար Ռեյ Չարլզին և կազմված էր նրա երգացանկի հանրածանոթ երգերից: Այդ նույն ժամանակ Փոքրիկ Սթիվին իր առաջին քայլերն սկսեց որպես կոմպոզիտոր և գրեց «Զրկիր տըղան» երգը: Ուանդերի առաջին ձայնասկավառակները հիմնականում վաճառվում էին նեգրական թաղամասերում և երկրի հարավում, բայց 1963 թ.-ի ամռանը նրա անունը, շնորհիվ «Մատների ծայրերը» երգի, հայտնի դարձավ ողջ Միացյալ Նահանգներում:

Անսպասելի հաջողությունը առաջ բերեց շատ պրոբլեմներ, որոնցից ամենակարևորը կրթության հարցն էր: Ֆիրմայի դիրեկտորները պահանջում էին, որ Սթիվին մշտապես շրջագայի: «Ուսուցիչներից մեկն ասաց, որ իմ դեմ կան 3 անբարենպաստ հանգամանքներ: Դրանք են՝ ես աղքատ եմ, սևամորթ և կույր: Եթե դրան նայենք գործնական տեսանկյունից, ապա ես ստիպված կլինեմ մոռանալ երաժշտությունը և շարունակել ուսումը, որովհետև կույր և ոչ բավականաչափ կրթված նեգրը այս կյանքում պարկ կարելուց բացի ուրիշ հեռանկարներ չունի...»: Բայց տղան այնպիսի ներքին ուժ ու հավատ ուներ, որ ձայնագրման ֆիրման որոշեց որոշ ծախսեր անել և մասնավոր ուսուցիչներ վարձել:

Իսկ հետո վրա հասավ ձայնի անխուսափելի խզումը: Շատ հռչակավոր երգիչներ դրանից հետո թողնում են բեմը: Սթիվին երջանիկ բացառություն է: «Փոքրիկ» նախածանցը ինքնըստինքյան վերացավ:

1971 թվականին Սթիվին դարձավ չափահաս: Նրա համար դա սոսկ սովորական տարեթիվ չէր: Սթիվին ստացավ մանկուց իրեն հասանելիք բոլոր հոնորարները:

Նյութական և ստեղծագործական անկախություն ձեռք բերելով, Սթիվին վերջապես կարողացավ զբաղվել իր սիրած գործով՝ երգեր գրել և ինքնուրույն ձայնագրել դրանք: Ստեղծվեց երգերի նոր ալբոմը, որ կոչվում էր «Իմ մտքերի երաժըշտությունը» (1972 թ., մարտ): Խոսքերը, երաժշտությունը գրեց Սթիվին: Ալբոմը ըստ արժանվույն գնահատվեց միայն ետին թվով՝ հաջորդ ձայնասկավառակի հաջողությունից հետո, որը լույս տեսավ նույն տարվա նոյեմբերին: «Խոսող գիրք», այսպես էր կոչվում նոր ալբոմը, որը իսկական երևույթ էր ամերիկյան «թեթև» երաժշտության մեջ: Սթիվի Ուանդերի ունկնդիրների թիվն արագորեն ավելանում էր: Նա դարձավ «սոուլ» երաժշտության առաջին կատարողը:

1973 թվականին Սթիվին միանգամից ստացավ «Գրեմմիի» հինգ տարբեր մըրցանակ, որ շնորհվում են երգարվեստի լավագույն նվաճումների համար:

1975 թվականին լրանում էր «Թամլա-Մոթաուն» ֆիրմայի հետ Ուանդերի կընքած պայմանագրի ժամկետը, և Սթիվին հայտարարեց, որ պետք է թողնի երաժըշտական բիզնեսը և Ալբերտ Շվեյցերի հետքերով գնա Աֆրիկա՝ կույր երեխաներին սովորեցնելու:

Սակայն 1975 թվականի օգոստոսին հայտարարեց, որ նա կնքել է նոր պայմանագիր նույն «Թամլայի» հետ: Դրանից հետո Սթիվին երեք տարով թողնում է բեմը: Այդ ընթացքում նա իր ողջ ժամանակը անց է կացնում ձայնագրման ստուդիայում: Թերևս քիչ են այն արվեստագետները, որոնց «արտաքին» կյանքն այդքան աղքատ լինի իրադարձություններով: Սթիվի Ուանդերը գտավ ինքնարտահայտման իր ուղին, դա երաժշտությունն էր, որի մեջ նա կարողացավ այնքան ամբողջական և բազմակողմանիորեն դրսևորել իրեն, որ ուրիշ գործերի համար պարզապես ժամանակ չէր մնում: Նա երգեր է գրել և նվիրել իր սիրելի երգիչներին: «Իմանալ նրան, նըշանակում է սիրել նրան» երգը Սթիվին հատուկ գրել է բլյուզ երաժշտության նըշանավոր երգիչ Բի Բի Քինգի համար:

«Բույսերի գաղտնի կյանքը» գիտաֆանտաստիկ բեսթսելլերը* Սթիվիին հուշեց իր նոր ալբոմի թեման: Գրքի հեղինակները գրում էին, որ բույսերը կարող են զգալ և նույնիսկ մտածել: Սթիվին որոշում կայացրեց. երաժշտությունը ներկայացնել գունավոր տեսաֆիլմով, իսկ ձայնասկավառակները պատրաստել այնպես, որ նրանցից անտառի և դաշտի

*գնայուն գիրք

հոտ գար: Սակայն այդ մտահղացումները չիրականացան: Շատերի կարծիքով, Սթիվիի ճանապարհորդությունը դեպի «Բույսերի գաղտնի կյանքը», (որը տեղի ունեցավ 1979 թվականին) ստացվեց ձանձրալի և «պերճաշուք»:

Քննադատությունը ազդեց Սթիվիի վրա, և նա դուրս եկավ մեկուսացումից: Անցավ մեկ տարի, և ունկնդիրներին ներկայացվեց «Ավելի թեժ, քան հուլիսը» հերթական ալբոմը:

«— Հուլիսը,— ասում է Սթիվին,— ամենաշոգ ամիսն է, երբ կատարվում են բազմաթիվ իրադարձություններ: Բայց այս աշխարհը, որտեղ մենք ապրում ենք, ավելի թեժ է, քան հուլիսը»:

Աշխատելիս Սթիվին ինքն իրեն չի խնայում: «Ես անկողմնապահ մարդ եմ և իմ ձայնասկավառակները նույնպես գրնահատում եմ անաչառ: Ես լսում եմ և չեմ հավանում դրանք: Այդ պատճառով դրանք երբեք ժամանակին չեն ձայնագրվում...»:

Այսպիսին է Սթիվին: Բոլորը գիտեն, որ նա երբեմն ստուդիայում աշխատում է երեք օր անընդմեջ:

Եվ նրա ուժը այն չէ միայն, որ նա ուզում է հաղթահարել իր կուրությունը: Մանկուց նա պետք է անընդհատ պայքարեր իր համար, որովհետև սևամորթ էր և ապրում էր Ամերիկայում:

Այժմ Սթիվին շատ է աշխատում կոմպյուտերով: «Ինձ մեծ հաճույք է պատճառում տարբեր հնչյունների ծրագրավորումը: Չէ՞ որ գոյություն ունեն այնպիսի հնչյուններ, որոնք մարդկային ձայնը անկարող է վերարտադրել: Ես երբեք չէի կարող լինել ջրվեժ կամ թռչուն, իսկ կոմպյուտերի օգնությամբ կարող եմ ըստեղծել այդ հնչյունները»:

Սթիվի Ուանդերը նաև հասարակական գործիչ է, Մարտին Լյութեր Քինգի անվան կենտրոնի ակտիվ գործիչ, «զինվոր, որ պայքարում է խաղաղության ու սիրո համար»: Նրա գեղարվեստական հայացքները ևս բխում են իր քաղաքական հավատամքից:

«Աֆրիկյան երաժշտությունը ամերիկյան մշակույթի բաղկացուցիչ մասն է,— ասում է Սթիվին:— Այն, ինչ այսօր նըվագում ենք մենք, հիմնված է աֆրիկյան ռիթմերի վրա: Երաժշտության սահմանները քարացած չեն: Մենք, սևերս ու սպիտակներս, պետք է սովորենք միմյանցից»:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# ԻՆՉՊԵ՞Ս ԿԱՐԵԼԻ Է ԳՈՒՇԱԿԵԼ ԵՂԱՆԱԿԸ ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



Սպասվող եղանակի մասին կանխագուշակումներ կարելի է անել նաև, դիտելով կենդանիների վարքը: Այդ բանը հայտնի է եղել դեռևս հազարամյակներ առաջ: Յոթերորդ դարի աշխարհահռչակ գիտնական Անանիա Շիրակացին իր «Յաղագս ամպոց և նշանաց» աշխատությունում այդպիսի բազմաթիվ օրինակներ է բերում: Հետաքրքիրն այն է, որ օրինակները հիմնականում տեղային բընույթ ունեն և վերաբերվում են մեր բնաշխարհին: Լավ ծանոթ լինելով դրանց՝ բընությանն ապավինած յուրաքանչյուր ոք հեշտությամբ կարող է կողմնորոշվել և խուսափել զանազան տհաճ անակնկալներից:

Բերենք մի քանի օրինակ Անանիա Շիրակացու «Յաղագս ամպոց և նշանաց» գրքից:

... Երբ արագիլը զարհուրած փախչում է ծովի կողմից և սուր ճիչ է արձակում՝ նշանակում է խառն, ամպամած եղանակ է սպասվում: Նա փախչում է,— եզրակացնում է Շիրակացին,— որովհետև նախապես զգում է ծովի ալեկոծությունը: Երբ պարզ եղանակին կոփուկ (մրրկահավ) կոչվող կենդանիները սարսափահար դուրս են գալիս անտառից և թռչկոտում իրար դեմ՝ հողմի և խառն ամպա-



...մածությաՆ ՆշաՆ է: Երբ վայրի բադերն ու սագերը դուրս են գալիս ցամաք և սկսում կտուցներով քրվել իրենց թևերը՝ ապա կարելի է եզրակացնել, որ փոթորկոտ հողմ է սպասվում: Փոթորկի նշան է նաև, երբ պապլյուս և օրոշեղեսո կոչվող թռչունները մեծ բազմությամբ ծովի կողմից դեպի ցամաք են թռչում: Երբ ծովային կամ գետային թռչունները ջրի մակերեսին քսվելով են թռչում, ուրեմն, անձրև է սպասվում: Խիտ ամպամածություն կարելի է սպասել այն դեպքում, երբ ծիծեռնակները, թռչելով լճի մակերևույթի վրայով, ժամանակ առ ժամանակ թևերը ջրերին են խփում:

Ամպամած եղանակի և անձրևի գուշակման այլ եղանակներ էլ են հայտնի: Շ ի ր ա կ ա ց ի ն նշում է, որ, եթե ընտանի թռչունները, ինչպես նաև աստղակտուցները (արջնագույն, սև ագռավ) և ձկնաքաղերը սկսում են քրվել և բույն վերադառնալիս թափահարում են թևերը՝ խառն ամպամածության նշան է: Երբ արագիլները կռնչոցով են իջնում ծովափ, անձրևի նշան է: Ամպամածության նշան է՝ երբ բոռերն ավելի սուր են կծում և ագահաբար ծծում արյունը: Երբ վայրի բադերն ամռանը ճախրելով հաճախ են թռչկոտում այս ու այն կողմ՝ անձրևոտ եղանակի նշան է:

Անանիա Շիրակացու բերած այս օրինակները վկայում են, որ դեռ դարեր առաջ, մեր ժողովուրդը, մանրազնին ուսումնասիրելով կենդանիների վարքը, կարողացել է եզրակացություններ անել սպասվելիք եղանակային փոփոխությունների մասին: Անձրևից անմիջապես առաջ հավերը գերադասում են պատսպարվել հավաբնում, ընդ որում՝ ձգտում են զբաղեցնել որքան հնարավոր է՝ բարձր թառը: Իսկ կովերը և արջառները այդ ժամանակ դնչները վեր են բարձրացնում և ագահությամբ ներծծում խոնավ, թարմ օդը: Անձրև է սպասվում նաև այն դեպքում, երբ մանր թռչուններն իրենց բներում քարանում-անշարժանում են, իսկ ճնճղուկներն անբնական կերպով փըքվում-ուռչում են իրենց փետուրները: Հորդառատ անձրևից առաջ սովորաբար աքլորները զիլ ծուղրուղու են կանչում, ընդ որում այդ ազդանշանների տոնը և ելևէջները խիստ տարբերվում են ցերեկային լուսատուի ծագմանը նվիրված ողջույնի հիացական բացականչություններից:

Անձրևի կանխանշան է նաև երեկոյան

խարույկի վերևում մեծ թվով միջատնե-րի հայտնվելը, որոնք պարսերով խաղում են օդում կամ խարույկի վրայով այս ու այն կողմ սլանում: Ի դեպ, ակամա «ռո-բինզոնները» խարույկի միջոցով կարող են միանգամայն անսխալ կերպով գուշա-կել հաջորդ օրվա եղանակը: Այսպես, օրինակ, երբ երեկոյան խարույկ վառե-լիս, փայտածուխներն արագորեն ծածկ-վում են մոխրով, հաջորդ օրը պարզ ու արևոտ, հիանալի եղանակ է սպասվում: Իսկ երբ փայտածուխները խարույկի մեջ վառ կերպով բոցկլտում են, հաջորդ օրն անձրևային եղանակ է լինելու:

Մոտալուտ անձրևը զարմանալի ճըշ-տությամբ կանխագուշակում են նաև մրջյունները: Երբ պարզ, արևոտ եղանա-կին մրջնանոցի շրջակայքում մրջյուններ չեն երևում, ուր-որ է՝ անձրև է տեղալու և ամպրոպ է ճայթելու:

Եղանակը հեշտությամբ և ճիշտ կարե-լի է կանխագուշակել նաև մեղուների վարքով: Եթե պարզ եղանակին մեղունե-րը փեթակից հեռու չեն թռչում, ապա շուտով անձրև է տեղալու: Իսկ եթե ամ-պամած եղանակի ժամանակ մեղուները վաղ առավոտից հեռու դաշտեր են թըռ-չում նեկտար և ծաղկափոշի հավաքելու, կարելի է չկասկածել, որ անձրև չի լի-նելու և եղանակը շուտով կպարզվի:

Թռչունների ձայները ևս անսխալ տե-ղեկություններ են տալիս սպասվելիք ե-ղանակի մասին: Եթե ամբողջ գիշերը սո-խակը երգում է, ապա հաջորդ օրը պարզ, արևոտ եղանակ է սպասվում:

Հրաշալի բարոմետր են նաև ճայերը: Ծովայինները և ծովամերձ շրջանների բնակիչները նկատել են, որ եթե այդ թռչունների երամները վաղ առավոտյան դեպի ծով են թռչում, ապա սպասվում է պարզ, արևոտ եղանակ: Ընդհակառակը, եթե ճայերը «ծով դուրս չեն գալիս», կու-տակվում են ափերում և անհանգստու-թյան նշաններ են ցուցաբերում, ապա փոփոխական եղանակ է սպասվում:

Երբ անձրևոտ և մառախլապատ, խիստ ամպամած եղանակ է սպասվում, խեց-գետինները գետակից ափ են դուրս գա-լիս: Եթե հաջորդ օրը, պարզ, արևոտ եղանակ է լինելու, ապա երեկոյան ան-սովոր ուժգնությամբ է հնչում ծղրիդների միալար երգը: Գորտերի բարձր կոկոռցը նույնպես լավ եղանակի նախանշան է: Անանիա Շիրակացին այդ կապակցու-թյամբ գրում է. «Երբ գորտերը իրար մոտ են հավաքվում և սկսում են կոկռալ՝ խա-ղըն ամպամածության նշանակ է: Իսկ երբ հավաքվում են այն գորտերը, որոնք կոչվում են գյուրնոս (հավանաբար խոս-քը վերաբերում է շերեփուկներին), ըն-չանք ավելի հավաստի ձևով են ցույց տալիս ամպամածության ժամանա-կը: Եվ սրանք այն աստիճանի մանր են, որ նրանց կոււ են տալիս տզրուկները»:

Բույդոկները մառախլապատ եղանակի նախօրյակին անտրամադիր են դառնում, հրաժարվում են սնվելուց: Իսկ եթե լավ եղանակ է սպասվում, նրանք արտա-կարգ աշխուժանում են և հաճույքով են ընդունում մարդու կամ շների «խաղի հը-րավերը»:

Երբ ուժեղ մրրիկի դեպքում ծովի ա-լիքներում դելֆիններ են երևում, ապա շուտով մրրիկը դադարելու և ծովը հան-դարտվելու է:

Զարմանալի կապ գոյություն ունի մա-յիսյան բզեզների աճի ու եղանակի միջև: Վաղուց հայտնի է, որ այն տարիներին, երբ մեծ քանակությամբ մայիսյան բը-զեզներ են հայտնվում, դիտվում է ու-ժեղ և երկարատև երաշտ:

Կենդանիների, հատկապես թռչուննե-րի վարքից դատելով, կարելի է կանխա-գուշակել նաև առաջիկա սեզոնի բնույթը: Օրինակ, եթե թռչունները բույն են հյու-սում ծառի, պատի կամ ժայռի արևոտ կողմում, ուրեմն, ամառը զով է լինելու: Իսկ եթե, ընդհակառակը, աշխատում են բույնը տեղադրել ստվերոտ կողմերում, նշանակում է, որ շոգ ամառ է սպասվում:

Եթե ճնճղուկները խմբեր կազմելով աշ-խատում են թաքնվել փշատերև բույսերի տերևառատ ընձյուղների արանքում, ա-պա պետք է սառնամանիք կամ ուժեղ բուք սպասել: Իսկ եթե, ընդհակառակը, դրանք միահամուռ ու աշխույժ ծլվլում են, ծառից ծառ, ճյուղից-ճյուղ թռչկոտում, ապա կարելի է չկասկածել, որ եղանակը տաքանալու է: Եթե ագռավը կեսօրին կռկռում է՝ դեմքով դեպի հարավ դար-ձած, ապա տաք եղանակ է սպասվում, իսկ եթե կռկռում է դեպի հյուսիս նայե-լով՝ ապա դա նշան է, որ եղանակը խիստ ցրտելու է: Բանն այն է, որ այս տարօրի-նակ թռչունը միշտ նստում է այն-պիսի դիրքով, որ կտուցը ուղղված լինի քամու կողմը (որպեսզի քամին փետուր-ները չգզգզի): Բացի այդ, եթե ագռավ-ները նստում են ծառերի կատարներին, ապա սառնամանիք է սպասվում, ցածր ճյուղերին՝ քամի, գետնին են նստում՝ նը-շանակում է եղանակը կտրուկ կերպով

տաքանալու է: Հաճախ կարելի է տեսնել, թե ինչպես ագռավները երամներով պտտվում են օդում, անհանգիստ կերպով տեղից տեղ թռչելով: Այս դեպքում կարելի է գուշակել, որ շուտով ուժեղ սառնամանիքներ են լինելու: Եթե ագռավն իր կտուցը շարունակ թաքցնում է թևի տակ, դա նշան է, որ եղանակները նկատելիորեն ցրտելու են: Իսկ եթե այդ թռչունները թռիչքի ժամանակ «խաղում են», ապա արևոտ, պայծառ եղանակ է ըսպասվում:

Դեռ հին ժամանակներից, մարդիկ նկատել են, որ գիշերները հաճախ գայլերը մոտենում են բնակավայրերին և ոռնում: Դա համարվել է սառնամանիքների սաստկանալու նշան: Մարդիկ նույնպիսի եզրակացության են հանգել, երբ բնակավայրերի շրջակայքում մեծ քանակությամբ նապաստակներ են հայտնվել: Հաճախ կարելի է տեսնել, թե ինչպես խաղաղ ու տաք եղանակների ժամանակ կաչաղակներն աշխատում են տանիքի քիվի տակ պատսպարվել: Թռչունների այդ վարքը մեզ անսխալ կերպով հուշում է, որ ուժեղ քամի, բուք ու բորան է լինելու: Հաճախ կարելի է ականատես լինել, թե ինչպես վաղ արշալույսից սկըսած ճնճղուկները ծլվլում են: Դա նշան է այն բանի, որ առաջիկա գիշերը սառնամանիք է լինելու: Երբ խածկտիկը երգում է, ապա կարելի է գուշակել, որ ձյուն է տեղալու, բայց միաժամանակ սկսվելու է նաև հալհլոցը: Ձմռանը, ուժեղ սառնամանիքների ժամանակ հաճախ կարելի է տեսնել, թե ինչպես բադերն ու սագերը «լողանում են» ձյան մեջ: Դա եղանակի տաքանալու նախանշան է: Նույն եզրակացությանը կարելի է հանգել, երբ ձին պառկում է ձյան վրա:

Առանձնապես մեծ զարմանք է պատճառում երկրաշարժը կանխազգալու կենդանիների հատկությունը: Սովորաբար երկրաշարժից առաջ գրեթե բոլոր կենդանիները, խելագար վախով բռնված, շտապում են հեռանալ վտանգավոր վայրերից: Հավատարիմ կենդանիները երբեմն փորձում են նախազգուշացնել մարդուն՝ սպասվող աղետի մասին: Նման բազմաթիվ դեպքեր են հայտնի: «Ռոբինզոնային» վիճակի մեջ ընկած մարդը պետք է կարողանա հմտորեն օգտվել նաև կենդանիների այս կարևոր հատկանիշից:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● 1918 թվականին, երբ Միացյալ Նահանգները նույնպես մտավ առաջին համաշխարհային պատերազմի մեջ, հրամանատարությունը պարզեց, որ դաշտային հեռախոսով և հեռագրով մի գումարտակից մյուսը հաղորդվող գաղտնի շատ հրամաններ որսվում և վերծանվում են գերմանացիների կողմից: Փորձելով լուծել գաղտնագրության պրոբլեմը, կապավոր կապիտան Հորները հիշեց, որ ամերիկյան չոկտո ցեղի հնդկացիների լեզուն աշխարհում ամենաքիչ հայտնի լեզուներից է: Հորներին հաջողվեց զինվորների մեջ այդ ցեղի որոշ թվով հնդկացիներ գտնել: Նրանց բաշխեցին շտաբների վըրա, և այդ պահից ամենագաղտնի խոսակցությունները հաղորդվում էին միայն չոկտո լեզվով:

Այս գաղափարը կրկին կիրառվեց երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ: Խաղաղօվկիանոսյան ռազմաճակատում զորամասերի ու միավորումների միջև ռադիոխոսակցություններին մասնակցում էին նավախո ցեղի մոտ 300 հնդկացիներ: Այն ժամանակ, բացի ցեղի անդամներից, որոնց թիվը մոտավորապես 50 հազար մարդ էր, ամբողջ աշխարհում նավախո լեզուն գիտեին 28 ազգագրագետներ ու միսիոներներ, և նրանց թվում չկար ոչ մի ճապոնացի կամ գերմանացի:

● Կոմի Ինքնավար ՍՍՀ-ի Ուխտա քաղաքում աշխատում է նավթամշակման գործարան: Այդ նավթը հայտնաբերվել է



պատահականորեն:

Մի խումբ զբոսաշրջիկներ, Պեչորայի վտակ Ուխտա գետի վրա նավարկելիս, ծխախոտի համար վառած լուցկին նետում են ջուրը: Նրանք սարսափով տեսնում են, որ իրենց շրջապատի ջուրը սկըսում է բոցավառվել: Մնում են բոցերի օղակի մեջ: Բարեբախտաբար դա երկար չի տևում: Այդ երևույթը պատճառ դարձավ ուսումնասիրելու գետի հատակն ու շրջապատը, և հայտնաբերվեցին նավթի հանքեր:

● Ռուանդայի (Կենտրոնական Աֆրիկա) արևմտյան սահմանում գտնվում է մի լիճ, որը երբեմն եռում է, և նրա մեջ գտնվող ձկները եփվում են ինչպես սովորական կաթսայում: Այդ լճից ոչ հեռու գործող հրաբուխները ժամանակ առ ժամանակ ժայթքում են, լավան լցվում է լիճը, և ջուրը սկսում է եռալ: Նրա միջի ձկները և ջրիմուռները եփվում են: Ջկնապուրի «եփման» պրոցեսը երբեմն տևում է շաբաթներ: Երբ հրաբուխը դադարում է, տեղացիները հավաքում են ափած ձկները և ուտում: Դա Կիվու լիճն է:



● Տաջիկստանի Յանգուրյան կիրճում գտնվում է մի լեռ, որից անընդհատ ծուխ ու տաք գազեր են արտավիժում: Լեռն այնքան տաք է, որ եթե նրա վրա չոր փայտի մի կտոր կամ տաշեղ դնեն, այն կվառվի:

Պարզվել է, որ այդտեղ մեծ շերտերով տարածված է քարածուխ: Հարյուր տարուց ավելի է, ինչ գիտնականներին անհայտ պատճառներով լեռը վառվում է այդպես: Տեղացիները այդ լեռն անվանում են լեռ-վառարան:

● Միլիոնավոր տարիներ առաջ հեռու արևելքում տեղի ունեցավ երկրի կեղևի մեծ ճեղքվածք, որի մեջ լցվեցին Խաղաղ օվկիանոսի ջրերը, և առաջացավ ճապոնական ծովը: Իսկ ցամաքի կտըրված մասերից գոյացան ճապոնական կղզիները, որոնք հանգիստ չմնացին իրենց տեղում: Դրանք մինչև օրս էլ շարժվում են դեպի արևելք: Վերջին տարիներին շարժումը մի քիչ դանդաղել է, բայց կղզիները դեռ սահում են:

Երկրաբան-հանքաբան Ի. Բարսենյովը եկել է այն եզրակացության, որ վերջին 60 տարվա ընթացքում այդ կղզիները շարժվել են դեպի արևելք՝ երկու մետր:



● Ալժիրի Սիդի-Բել-Աբբես քաղաքի բընակիչները երբեք կարիք չեն զգում խանութից թանաք գնելու: Այդ քաղաքի մոտ գտնվում է մի լիճ, որն ամբողջապես թանաք է: Հարց է ծագում. որտեղի՞ց է առաջացել այդքան թանաք: Մասնագետները գտել են, որ այն առաջացել է լիճը թափվող երկու փոքր գետերի խառնուրդից: Դրանցից մեկը հագեցված է երկաթի աղերով, իսկ մյուսը, որ հոսում է տորֆային ճահիճների միջով, իր ջրերում պարունակում է գղտորի հյութի բաղադրություն: Այդ ջրերը միմյանց խառնըվելով, առաջացնում են թանաք: Լճում դուք չեք գտնի ոչ ձուկ և ոչ էլ այլ կենդանի օրգանիզմ: Լճի ջուրը պիտանի է միայն գրելու համար:

Բաժինը պատրաստեց՝
ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ

## ԺՊԻՏՆԵՐ

Անգլիացի քիմիկոս Դևին, որի լաբորանտն էր երիտասարդ Ֆարադեյը, հետագայում հաճախ էր կրկնում.

— Իմ բոլոր հայտնագործություններից ամենամեծը Ֆարադեյն էր:

Մարդիկ որքան շատ են նավարկում, այնքան ավելի շատ են տառապում ծովային հիվանդությամբ... Նույնիսկ ծովակալ Նելսոնն էր դրանից բողոքում...

Մի անգամ շվեդական թերթի ընթերցողները կարդացին հետևյալ հայտարարությունը. «Ուշադրություն, բոլոր նրանց, ովքեր տառապում են ծովային հիվանդությամբ: Դուք ուղարկում եք ինձ երեք կրոն, իսկ ես ձեզ՝ դեղամիջոց: Ժլատություն չանեք: Ընդամենը երեք կրոն»:

Նրանք, ովքեր ուղարկեցին երեք կրոն, փոստով ստացան քառածալ մի թուղթ, որի վրա լակոնիկ գրված էր. «Մնացեք ափին»:



Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Տանտիրուհին հյուրից ներողություն խնդրեց, որ պանիր չունի: Նրա փոքրիկ տղան սենյակից դուրս եկավ և շուտով վերադարձավ մի կտոր պանիր ձեռքին, որը դրեց հյուրի ափսեի մեջ:

Հյուրը ժպտաց, պանիրը կերավ և ասաց. «Շնորհակալություն, փոքրիկ, դու շատ սիրալիր ես, և քո աչքերն ավելի սուր են, քան մայրիկինը: Որտեղի՞ց գտար պանիրը»:

— Մկան թակարդից, սըր:

# ՊԻՈՆԵՐ


ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—05—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 9 • 87




Հանձնված է արտադրության 1.VII.87 թ.: Ստորագրված է տպագրության 19.VIII.87 թ.: ՎՖ 02977: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66532: Պատվեր՝ 1465: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 1.VII.87 г. Подписано к печати 19.VIII.87 г. оФрмат 70×100 1/16. ВФ 02977. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 66532. Заказ 1465. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Նկարիչ՝ ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ



Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈԼՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵԶ-ՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.։

ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.